

# ԱՇՆԱՆ ԳՈՒՅՆԵՐ

ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

Հարավից կարմիր
Քամի է փչում,
Հյուսիսից կապույտ
Հողմ է շառաչում,
Հանդերում դեղին
Հովն է կարկաչում:
Գալիս, գույները
Խառնըվում իրար,
Գունավորում են
Աշխարհը արար:

Գույները այդպես
Ծիծաղով գալիս
Հետո տխրությամբ
Ալիք են տալիս:
Եվ կաթկթում են
Պաղ ջրերի մեջ.
Հոսում է հանդարտ
Տխրությունը պերճ:

Կապույտ կարկաչով,
Դեղին կարկաչով,
Կարմիր կարկաչով,
Արծաթե կանչով,
Ջրերը թախծոտ
Գույներ են տանում:
Եվ հետո նրանք
Երկինք համբառնում
Եվ հաջորդ գարնան
Կապույտ երկնքում
Հավաքվում մի տեղ,
Արև են դառնում...

Արև են դառնում
Եվ հաջորդ գարնան
Տաք շողշողալով
Թափվում են հողին,
Փա՛ռք մեզ ամենքիս
Գարուն տվողին,
Ամառ տվողին,
Աշուն տվողին
Եվ այսքան գունե՛ղ,
Նախշո՛ւն տվողին:

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# ՄԻՆՉԵՎ ԼՈՒՅՍ ՎԱՌՎՈՒՄ ԷՐ ԼՈՒՅՍԸ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Մի տուն եմ հիշում մեր գյուղի ծայրին,
Միայնակ մի տուն.
Կտուրին բուսած կակաչներ վայրի,
Խոտեր ցողաթուրմ։

Տունը ո՛չ պարտեզ ուներ, ո՛չ այգի,
Ո՛չ էլ ցանկապատ,
Ձգվում էր նրա հնամյա բակից
Մի նեղլիկ ճամփա։

Այդ նեղլիկ ճամփան մարգերի միջով,
Նման առվակի,
Գալիս էր հատվում անուշ կարկաչով
Դպրոցի բակին։

Այն օրից որքա՜ն լույս երազների
Օրեր են անցել,
Ապրում էր այնտեղ մեր հայոց լեզվի
Ուսուցիչը ծեր։

Երբ հանգչում էին լույսերը մեկ-մեկ
Նիրհող տների,
Անլույս չէր մնում այն տունը երբեք
Մութ գիշերներին։

Իր ծեր աչքերին ակնոցը դրած,
Մինչև լույս արթուն,
Մեր տետրակներն էր՝ սեղանին փռած,
Մինչև լույս կարդում։

Ղողանջների պես դպրոցի զանգի,
Օրերն են անցել,
Բայց աչքիս դեմ է մեր բարեհոգի
Ուսուցիչը ծեր։

Այնքա՜ն տներ են քանդվել մեր գյուղում,
Շինվել նոր տներ,
Այնքա՜ն լույսեր են հիմա շողշողում
Փոխված գյուղում մեր։

Այն տունը չկա մեր գյուղի ծայրին,
Բայց նա կա կյանքում,
Իր բոլո՛ր, բոլո՛ր աշակերտների
Լուսաբաղձ հոգում։

# ՈՒՍՈՒՑԻՉ ՊԱՐՈՆ ՄԱՐՏԻՐԸ

Բ. ԹՈՎԻԿ

Այսօր էլ, հիմա տասնյակից ավելի տարիների հեռավորությունից ես տեսնում եմ քո պարթև հասակը· իմ լա՛վ· իմ բարի՜ ուսուցիչ, պարո՛ն Մարտիր...

Վարագա վանքը հիշելիս. առաջին հերթին ես քեզ եմ մտաբերում, պարո՛ն Մարտիր, քո կապույտ-կապույտ աչքերն ու մշտաժպիտ դեմքդ կիսող հրաշեկ ու թավ բեղերիդ զույգ փնջիկները:

Այդ դու էիր, որ առաջին անգամ սովորեցրիր ինձ Հայկ Նահապետի անունը, ուղեղիս մեջ մեխեցիր նրա անունով հայ կոչվելու միտքը և աչքերիս քողը պատռելով հայտնեցիր ինձ, թե ինչու է մեր շրջանը կոչվում Հայոց Ձոր և գյուղը, ուր ծնվել եմ ես՝ Հնդստան:

Երկու տարվա ընթացքում ես սովորել էի արդեն այն բոլորը, ինչ գիտեին մեծ աշակերտները: Երևի մասամբ էլ այդ էր պատճառը, որ մորս խնդրանքն ու քեռուս միջնորդությունը հարգվեց ու ես ընդունվեցի Վարագա վանքի դպրոցը:

Վարա՜գ: Ինչպիսի՜ նոր աշխարհ ինձ համար:

Դպրոցի լուսամուտներից նայելիս, անծայրածիր ծառաստաններ են աչքդ շոյում: Վան քաղաքն է փռված առաջդ իր լեռնակոփ միջնաբերդով: Շենքերը չեն երևում, Այգեստան թաղամասի թևերն են միայն տարածվել դեպի Շուշանց ու Կուռուպաշ գյուղերը, և ծո՜վն է, Բզնունյաց ծիծաղախիտ ծո՜վը, որ գերում է քեզ իր աննման կղզիներով՝ Աղթամար, Լիմ, Կտուց, Առտեր...

Պարոն Մարտիրն իմ մերկությունը ծածկող միակ թոււմը, կտավե շապիկն ու հորեղբորս նվիրած տրեխները նետեց վառարան: Հաջորդ օրը նա ինձ, «պոչով սոլ» տվեց ու կարից նոր դուրս եկած փաթուսխա շապիկ-վարտիք:

Այս շապիկ-վարտիքով ես մնացի մի ամբողջ ամիս: Ճիշտ է, աշակերտներն ինձ տեսնելիս կանչում էին «չլուտն եկա՜վ· չլուտն եկա՜վ»· բայց ես բնավ չէի վիրավորվում, որովհետև հավատացած էի, որ այս նոր տարազով ինձ տեսնելիս՝ իմ գյուղական ընկերների բերանը հիացմունքից կարող էր բաց մնալ:

Առաջին օրերին, երբ դասարան էր մտնում պարոն Մարտիրը և բեղերի տակ ժպտալով ինձ մոտենում, ես կուչ էի գալիս, վախենալով, ահա ուր որ է, նա ևս մեր գյուղի վարժապետի նման երեսս պիտի դաղի, կիսատ թողնի բառերը բերանիս մեջ, սակայն վատը ես էի, որ դեռ չէի ճանաչում նրա բարի սիրտըն ու հոգին:

Նստում էր կողքիս, շոյում գլուխս ու, առանց ձանձրանալու, ասածը բազմաթիվ անգամ կրկնել տալով, բաց էր անում փակ լեզուս, որ համառորեն լռում էր մյուս դասատուների դասերին:

Կախարդ էր պարոն Մարտիրը: Հայոց պատմության դրվագներն այնպե՜ս էր նկարագրում, որ կարծես դեպքը կատարվում էր հենց աչքիդ առջև:

## ԱՐԵՎԻՆ

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

Վառվի՛ր, իմ արև՛, արևոտ երկրի,
Դու ե՞րբ ես եղել այսքան թանկ ու մոտ,
Այսքան ծիծաղկոտ, ջերմ ու բերկրալի
Եվ այսքա՜ն, այսքա՜ն, այսքա՜ն կրակոտ:
Խնդությունն պտտի՛ր անիվդ ոսկե
Ու ամռան շռայլ շողքով հուրհրա՛,
Կապույտ, երկնային քո գահից հյուսկեն
Յո՜թ կարմիր խնձոր գցիր մեզ վրա.
Մեկը՝ մշակին քո արդար հողի,
Մեկը՝ յոթ կտրիճ զավակ բերողին,
Մեկը՝ մայր հողից պղինձ հանողին,
Մեկը՝ տան պատին քարեր դնողին,
Մեկը՝ սահմաններն ամուր պահողին,
Մեկը՝ այբուբեն, ուսում սիրողին,
Վերջապես մեկն է՝ քո հնձաններում
Խնջույքիդ համար գինի քամողին:
Արև՛, ջրվեժում ձորն ի վեր կախվի՛ր,
Ձուլվի՛ր ձորերին մեր քարաղողանջ,
Մատաղ սրտերին քո երգը խառնի՛ր
Ու տաք մեղրաբույր՝ հանդերին կանաչ:
Քար ու քարափներ ծաղկունքով ծածկի՛ր,
Բույները լցրո՛ւ թխսով ու ձագով,
Թող ամեն շողիդ մի ծիծառ թառի,
Ու միշտ վա՜ռ պահիր բարի լույսը քո:

*Մի օր պարոն Մարտիրը մեզ համար կարդաց Սասնա Մհերի պատմությունը: Ամբողջ դասարանով համակ լսողություն դարձած՝ կլանում էինք ընթերցումը, հուզմունքով հետևում բառերի շեշտադրությանը, ինտոնացիային, դադարներին: Երանի՜ Առյուծ-Մհերը հասներ ու կոխի բռնվեր Սասնա ճամփաները կտրող շատ առյուծների հետ ու ձևեր, անվերջ ձևեր նրանց երախները, որ մենք հնարավորություն ունենայինք երկար վայելել պարոն Մարտիրի ձայնի թովիչ ելևէջները:*

*Նոր տարվա տոնի հաջորդ օրը ընկույզի «գլորոցի» էինք խաղում: Ընկերս՝ Մնոն, խաղի մեջ ինձ կարգին կողոպտեց, իսկ ես քիթս կախած՝ հրաժարվեցի տարված ընկույզներս ետ ստանալ: Վիշտս մեղմելու համար դուրս եկա բակ, թաքուն մի լավ լաց եղա, ապա փորձեցի մյուսների նման սառույցի վրա սղղալ: Սկզբում օրորվելով, ապա արագ առաջ մղվելով... թրմփացի գետին: Երբ աչքերս բաց արի, տեսա Մնոն կողքիս նստած՝ թաշկինակով արցունքներն էր սրբում, իսկ պարոն Մարտիրը վրաս կռացած՝ հայրական խանդաղատանքով ճակատիս թրջոցն էր փոխում: Փուլ եկավ սիրտս ու փղձկացի:*

*Իմ սիրելի՛, անգի՛ն ուսուցիչ: Նրա մեկնելուց հետո ետ տարա բարձս ու տեսա, որ տակը տոպրակով ընկույզ, չիր ու չամիչ էր դրել, Արտամետի կարմիր ու հոտավետ մի խնձոր և գեղեցիկ մի սանր:*

*Որքան ժամանակ էր անցնում, դասարանից դասարան էինք փոխվում, պարոն Մարտիրի սերն ու հոգատարությունը այնքան ավելի էր ջերմացնում մեր հոգին: Յուրաքանչյուր աշակերտի համար իր ձեռքով ընթերցանության գիրք էր ընտրում գրադարանից, բովանդակության որոշ մասը պատմում, հետաքրքրություն առաջացնում, բորբոքելով ընթերցանության կրակը:*

*Գիտելիքների ստուգման ժամ ուներ: Աշակերտներից մեկը հեղինակի անունն էր ասում, մյուսը թըվում էր նրա ստեղծագործությունները, երրորդը՝ գլխավոր հերոսների անունները: Նույն ձևով թվում էինք համաշխարհային գիտնականների ու նրանց կատարած գյուտերի մասին, կրկնում թվաբանական կանոնները, պատմում հայ ժողովրդի պատմության առանձին դրվագներն ու ժամը ավարտում հայրենաշունչ երգերով:*

*Օրեր անցան, ամիսներ, տարի: Բռնկվեց համաշխարհային առաջին պատերազմը:*

*Ապրիլի 7-ին սկսվեց Վանի հերոսական ինքնապաշտպանությունը: Գնդակների կարկուտն ու թընդանոթների որոտը տևեց մի ամբողջ ամիս:*

*Ես ու Մնոն մի օր փողոցում տեսանք մեր սիրելի ուսուցիչ պարոն Մարտիրին, որ փամփշտակալը խաչփակ գցած, հրացանը ձեռքին, հայ զինվորների հետ շտապում էր դեպի դիրքերը:*

*Առանց նկատվելու, հեռվից մենք մեր սիրելի ուսուցչին ուղեկցեցինք մինչև դիրքերը և պարկուճներ հավաքող երեխաների հետ խրամատի մեջ մտած՝ երկար դիտում էինք, թե ինչպես է նա իր պատմած առասպելական հայ քաջերի նման կռվում ինքնամոռաց:*

*— Պարոն Մարտիրը որ մտել է կռվի մեջ, ուրեմն մենք անպայման կհաղթենք,—վճռեցինք մենք:*

*Հաղթանակն իսկապես մերը եղավ: Մայիսի ըսկըզբներին ազատարար ռուս զորքերն ու հայ կամավորները լցվեցին քաղաք:*

*Այնուհետև ջրեր հոսեցին, ջրեր՝ պղտոր ու դառնաղի...*

*Ո՞ւր մնացիր դու աշխարհավեր այդ օրերին, իմ սիրելի՛ պարոն Մարտիր...*

*Ինչպիսի վախճան էլ որ ունեցած լինես, հիմա էլ, հինգ տասնյակից ավելի տարիների հեռավորությունից, քո պարթև հասակով, կապո՜ւյտ-կապո՜ւյտ աչքերի շողով և ազնիվ հոգու մեծությամբ, էությանս մեջ կմնաս որպես միտք շոյող և հոգի ազնվացնող թանկագին մի հուշ:*

# ԿՈԿՈՐԴԻԼՈՍՅԱՆ ԱՐՑՈՒՆՔՆԵՐ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

(Վ. Ռեյխից)

Ո՞նց է հառաչում
Կոկորդիլոսը.

— Ա՜խ, գորտի ձագը
Դեռ կոկորդումս է:
Ի՞նչ ասեմ նրա
Խեղճ հորն ու մորը.
Հիմա լալիս են
Իրենց սև օրը:
Չէ՛, արի թույլ տամ,
Որ այս կիրակի
Գան տեսակցության
Իրենց խեղճ ձագին:

# «ԻՄ ՍԻՐԵԼԻ ՍԱՀԱԿՅԱՆ»

*ՄԿՐՏԻՉ ԱՐՄԵՆ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

Ուսուցիչ Հակոբյանի կյանքում միանգամից տեղի ունեցան երկու ուրախալի դեպք: Նա ստացավ վաստակավոր ուսուցչի կոչում և հենց նույն օրերին էլ ստացավ նոր բնակարան: Շատ էր ուզում խնկույն փոխադրվել և կոչում ստանալու առթիվ իր խնջույքը կատարել այնտեղ, բայց բնակարանը դեռ լրիվ պատրաստ չէր: Այսինքն, պատրաստ էր, բայց լցված էր շինարարական աղբով, լուսամուտների ապակիները խիստ կեղտոտվել էին պատերն սպիտակեցնելու ժամանակ և այլն, և այլն: Հարկավոր էր մաքրել այդ ամենը, բայց բնակարանները վաթսունից ավելի էին, իսկ բանվորուհիներն՝ ընդամենը երեքը:

— Մի շաբաթից,— ասացին նրան:

Այնուամենայնիվ, Հակոբյանն շտապեց իր նոր բնակարանի դռան վրա փակցնել իր անվանատախտակը և փոստարկղը: Ոչ թե պոկեց հին բնակարանի փոստարկղը և բերեց այդտեղ, այլ գնեց նորը, որովհետև հին հասցեով ստացվում էին շնորհավորանքի բազմաթիվ հեռագրեր ու նամակներ: Հո չէ՞ր կարելի մնալ առանց փոստարկղի:

Երբ նա մեխն էր խփում, դատարկ բնակարանից դուրս եկավ մի բանվորուհի՝ ավելը ձեռքին, ժպտաց և ասաց.

— Դուք իզուր եք չարչարվում, մի քանի օր հետո միջանցքում փոստարկղներ կկախեն բոլոր բնակարանների համար:

— Մի քանի օրի՞ց...— նույնպես ժպտաց Հակոբյանը:— Իսկ ինձ հարկավոր է հիմա: Կարող են նամակներ ստացվել, հեռագրեր: Բայց դուք ա՛յն ասացեք, ե՞րբ է պատրաստ լինելու իմ բնակարանը:

— Նույնպես մի քանի օրից, ախր ես մենակ եմ աշխատում,— պատասխանեց բանվորուհին և նորից մտավ ներս՝ իր աշխատանքը շարունակելու:

Իհարկե, իզուր էր շտապել ուսուցիչ Հակոբյանը: Դեռ ոչ ոք չգիտեր նրա նոր հասցեն, ո՞վ պիտի այդ հասցեով նամակ գրեր նրան, տար հեռագիր: Նա ինքն էլ անմիջապես հասկացավ դա, բայց թափ տվեց ձեռքը: «Մեխել եմ՝ թող մնա»...

Բայց որքան մեծ եղավ նրա զարմանքը, երբ հետևյալ օրը նորից գալով իր նոր բնակարանը, առանց որևէ ակնկալիքի բաց արեց փոստարկղը և գտավ այնտեղ մի նամակ...

«Իմ սիրելի և անմոռանալի ուսուցիչ, ընկեր Հակոբյան,— գրված էր այնտեղ,— թող ձեր կյանքը լինի այնքան լուսավոր, որքան որ լուսավոր դարձրիք դուք իմ կյանքը՝ իմ հոգու մեջ գցելով ուսման առաջին պայծառ շողերը»...

Եվ ուրիշ ոչինչ: Բայց մի՞թե այդքանը ևս լիովին բավական չէր՝ հուզելու համար վաստակավոր ուսուցչին:

Իսկ նամակի տակ ստորագրված էր՝ «Սահակյան»: Միայն ազգանունը՝ առանց անվան: Եվ առանց հետադարձ հասցեի:

«Սահակյա՛ն... Սահակյա՛ն...»— փորձեց մտաբերել ուսուցիչը: Բայց եկ և մտաբերիր, երբ դա հայկական սովորական ազգանուն է, իսկ դու՝ բազմաթիվ տարիների ուսուցիչ: Քի՞չ Սահակյաններ են անցել քո դասարաններով:

Գուցե նրա համար, որ նամակը գրված էր այդքան կարճ ու ջերմ, գուցե նրա համար, որ դա առաջին նամակն էր՝ նոր հասցեով, ինչպես էլ որ լիներ, նամակն առանձնապես հուզեց Հակոբյանին, և նա ցանկություն զգաց մի քանի ջերմ խոսքով պատասխանելու դրան: Ափսոս, որ ծրարի վրա չկար հետադարձ հասցե...

Ուսուցչական թերթի համար Հակոբյանը գրեց մի քանի տող.—«Շնորհակալություն եմ հայտնում բոլոր նրանց, ովքեր շնորհավորեցին ինձ՝ վաստակավոր ուսուցչի կոչում ստանալուս համար»:

Տանելով այդ գրությունը խմբագրություն ու վերադառնալով, նա հանկարծ մտածեց՝ «Իսկ ինչո՞ւ չգրել նաև մի պատասխան-շնորհակալություն՝ ուղղված աշակերտ Սահակյանին, և տպել «Պիոներ» ամսագրում»...

Նա նստեց և գրեց:

— Իմ սիրելի Սահակյան... Ինձ շատ հուզեց քո շնորհավորական ջերմ նամակը և ահա շնորհակալության խոսք եմ ուզում ասել քեզ:

Բայց ո՞վ ես դու, ո՞ր մի Սահակյանը: Եվ եթե, ասենք թե, դու այսինչ Սահակյանն ես, մի՞թե դա նշանակում է, թե դա միայն դու ես, թե ինձ չեն շնորհավորել մյուս Սահակյանները, Հարությունյանները, Հովհաննիսյանները, Հակոբյանները... Չգրել՝ չի նշանակում չշնորհավորել: Ամեն անգամ, երբ նրանք վերհիշեն իրենց դպրոցական տարիները և մի բարի խոսքով տան իմ անունը, մի՞թե շնորհավորանք չէ դա: Եվ երբ ուրիշ մարդիկ ասեն նրանց մասին՝ «դաստիարակված տղա է, պատրաստված մարդ է»,—մի՞թե շնորհավորանք չէ դա ուսուցիչներ Հակոբյանին,

Հովհաննիսյանին, Հարությունյանին, Սահակյանին...

Բայց, ահա, դու գրել ես և ես ուզում եմ պատասխանել քեզ: Սակայն ո՞վ ես դու, իմ սիրելի Սահակյան...

Ինձ թվում է, թե դու այն տղան ես, որն այնքան ընդունակ էր, բայց այնքան՝ ծույլ: Եվ ես, տխուր սրտով «2»-ներ էի շարում նրա տետրակների մեջ: Համոզում էի, խրատում, նույնիսկ խնդրում, բայց նա, այսինքն դու, ուշադրություն չէիր դարձնում այդ ամենի վրա և շարունակում էիր քո չարություններն ու ծուլությունը:

Դու ուրախ տղա էիր, բայց քանի մոտենում էինք տարեվերջին, այնքան դառնում էիր տխուր: Դու հասկանում էիր, որ երկրորդ տարին ես մնալու նույն դասարանում:

Եվ ահա, մի օր, իմ ծննդյան օրը, երբ աշակերտները մեկ-մեկ կամ խմբերով գալիս էին մեր տուն և շնորհավորում էին ինձ, դու էլ եկար և բերեցիր ինձ մի թանկարժեք նվեր...

Դա շատ անախորժ տպավորություն թողեց ինձ վրա: Սի՞րտս էիր ուզում փափկացնել, ի՞նչ է, որ ես լավ թվանշան դնեմ քեզ:

Ես քեզ վերադարձրի քո թանկարժեք նվերը: Դու չպնդեցիր, որ վերցնեմ, այլ հասկացար արածիդ տգեղությունը, կարմրեցիր և գնացիր:

Հետևյալ օրը, իմ սիրելի Սահակյան, ես քեզանից ստացա շատ ու շատ ավելի թանկարժեք նվեր: Բաց արեցի բանդերոլը և այնտեղ գտա քո տետրակը մեր հերթական դասի քո հիանալի պատասխանով: Ես հուզմունքից նույնիսկ արտասվեցի: Ախր գիտեի, որ ընդունակ տղա ես դու, անպիտան, ախր գիտեի...

Որտե՞ղ ես դու հիմա, ի՞նչ ես անում՝ չգիտեմ, իհարկե: Բայց որ դարձել ես պիտանի մարդ՝ ես դրանում չեմ կասկածում, իմ սիրելի Սահակյան...



Թե՞ դու այն Սահակյանն ես, որը մի օր այնքան ապշեցրեց ինձ՝ փորձառու ուսուցչիս...

Դա այն օրերին էր, երբ Գագարինը կատարել էր աշխարհում առաջին թռիչքը դեպի տիեզերք: Բոլոր թերթերը գրում, ռադիոն ու հեռուստատեսությունը հաղորդում էին նրա մասին: Մթնոլորտն անգամ կարծես լցված էր նրա անունով՝ «Գագարին, Գագարին»...

Իհարկե, իհարկե, բոլոր երեխաները երազում էին նույնպես դառնալ տիեզերագնացներ: Ու թեև բոլոր ուսուցիչներս էլ գիտեինք, թե ինչ պատասխան ենք ստանալու, բայց և այնպես հարց տվեցինք աշակերտներին, թե ինչ են ուզում դառնալ՝ երբ ուսումն ավարտեն:

Իհա՜րկե, իհա՜րկե, բոլորը պատասխանեցին՝ «տիեզերագնաց»:

Եվ միայն դու, իմ սիրելի Սահակյան, ասացիր՝ «տրոլեյբուսի վարորդ»...

Բոլորը շուռ եկան և զարմացած նայեցին քեզ: Բայց դու կատակ չէիր անում:

— Վարորդ,— կրկնեցիր դու հանգիստ:

— Իսկ... ինչո՞ւ համար,— հարցրի ես:

— Որովհետև բոլորը չէ՛, որ դառնալու են տիեզերագնացներ, հարկավոր են նաև տրոլեյբուսի վարորդներ,— ասացիր դու:

— Ուրեմն դու այդ անհրաժեշտության համա՞ր ես հրաժարվում տիեզերագնաց լինելու ավելի հաճելի գործից,— կես-կատակ հարցրի ես:

— Ինչո՞ւ «ավելի հաճելի»,— հակաճառեցիր դու: —Ինձ ավելի հաճելի է տրոլեյբուսի վարորդ լինելը: Ես սիրում եմ մեր քաղաքը, սիրում եմ մարդկանց: Տիեզերանավի մեջ միայն ես ինքս եմ լինելու և միայն ինձ համար եմ պատասխան տալու, իսկ տրոլեյբուսի մեջ ես պատասխանատու եմ լինելու շատ ու շատ մարդկանց համար, որ անվտանգ ու առանց ուշանալու գնան իրենց գործերին:

Դու այդ ամենն ասացիր մեծավարի, լրջորեն և ավելացրիր կատակով.

— Երբ բոլորդ վերադառնաք տիեզերքից և ուզեք գնալ տուն՝ ես ձեզ կտանեմ իմ տրոլեյբուսով...

Անցյալ ամիս ես մի օր դուրս էի գալիս տրոլեյբուսից, երբ լսեցի.

— Բարև՛ ձեզ, ընկե՛ր Հակոբյան...

Դու էիր՝ ղեկի մոտ նստած: Կատարվել էր քո վա-

# ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

Վիլյամ Սարոյանը համարվում է ժամանակակից ամենամեծ գրողներից մեկը, որի գրքերը մեծ տպաքանակներով լույս են տեսնում աշխարհի բազում լեզուներով և անմիջապես էլ սպառվում են: Նրա թատերգությունները բեմադրվում են տարբեր երկրների հայտնի բեմերում, նրա մի շարք ստեղծագործությունների հիման վրա ստեղծվել են կինոնկարներ: Դեռ վերջերս օպերայի վերածվեց Սարոյանի «Իմ սիրտը լեռներում է» թատերգությունը և մեծ հաջողությամբ բեմադրվեց Նյու-Յորքում:

Սարոյանը ծնվել է 1908 թվականին Ֆրեզնո քաղաքում, Բիթլիսից տարագրված նահապետական մի հայ ընտանիքում: Հայրը մահացավ, երբ Սարոյանը երկու տարեկան էր: Դժվար մանկություն է ունեցել մեծանուն գրողը. փոքր հասակից սկսել է աշխատել, եղել է լրագրավաճառ, հեռագրատան ցրիչ, գրասենյակային աշխատող, սևագործ բանվոր:

Նրա առաջին գիրքը՝ «Խիզախ պատանին թռչող մարզաձողերի վրա» վիպակը, մեծ, այսպես ասած «աղմկալից» ընդունելություն գտավ և հռչակեց երիտասարդ գրողի անունը: Այդ օրվանից, յուրաքանչյուր նոր ստեղծագործության հետ, ավելացավ Սարոյանի համբավը: Ամերիկայի Միացյալ Նահանգներում նրա անունը դնում են ամերիկյան ժամանակակից չորս մեծ գրողների՝ Հեմինգուեյի, Ֆոլկների, Ստեյնբեկի և Կոլդուելի կողքին:

Բեղուն ստեղծագործող է Սարոյանը, գրում է կարճ պատմվածքներ, բանաստեղծություններ, վիպակներ, ակնարկներ, կինոսցենարներ և թատերգություններ: Գրում է պարզ, հասարակ մարդկանց, նրանց դժվար ու տխուր կյանքի, ինչպես նաև աշխարհի ճանապարհներում մոլորված, իրենց հայրենի տուն ու տեղից քշված պանդուխտ հայերի մասին: Նրա լավագույն գործերից է «Իմ անունը Արամ է» վիպակը:

Թեև Սարոյանը գրում է անգլերեն, բայց իրեն համարում է հայ գրող:

«Լեզուն, որով գրում եմ, անգլերեն է, միջավայրը, որը նկարագրում եմ, ամերիկյան է, իսկ ոգին, որ ինձ մղում է գրելու՝ հայկական է: Ուրեմն ես հայ գրող եմ և պատկանում եմ հայ գրողների ընտանիքին»,—իր մասին գրել է Սարոյանը:

Դեռևս մի քանի ամիս առաջ՝ հանդես գալով մամուլում, նա ամերիկահայ երիտասարդությանը կոչ էր անում սովորել իրենց մայրենին:

«Մեզ որպես օրհնություն շնորհվել է գեղեցիկ հնչեղությամբ մի լեզու, որը հարուստ է արտահայտչական միջոցներով և իմաստաբանությամբ: Նա անդրադարձնում է մեր մշակույթի գունեղ լուսապատկերը»,— գրում է Սարոյանը:

Վերջերս լույս տեսավ մեծ գրո-

---

**դեմի ցանկությունը: Եվ ես պատասխանեցի քեզ՝ ուրախ.**

**— Բարև, իմ սիրելի՛ Սահակյան:**

**Այդպես, ուսուցիչ Հակոբյանը վերհիշեց ու թվարկեց էլի մի քանի Սահակյանների, ավարտեց նամակը և դուրս ելավ տնից՝ «Պիոներ»-ի խմբագրություն տանելու:**

**Նախքան այնտեղ գնալը նա, մոտենալով իր նոր շենքին, իջավ ավտոբուսից՝ տեսնելու, թե ավարտե՞լ է արդյոք բանվորուհին բնակարանի մաքրելը:**

**Մտավ ներս: Բանվորական հագուստով կինը սենյակներից մեկում ավարտում էր գործը: Հակոբյանը ողջունեց նրան և շնորհակալություն հայտնեց շուտ ավարտելու համար:**

**— Ես մենակ հազիվ թե ավարտեի,— ասաց կինը և գլխով արեց դեպի մյուս սենյակը:**

**Այնտեղ, լուսամուտի գոգին կանգնած, առանց**



*ղի 41-րդ գիրքը, որը կոչվում է «Կյանք, մահ և փախուստ դեպի լույսին»: Իսկ 1969 թվականին Նյու-Յորքի համաշխարհային հրատարակչական ընկերությունը լույս ընծայեց Սարոյանի «Նամակներ Տեյլրու փողոցի 74 համարից, կամ, Մի գնա, բայց եթե պետք է գնաս, բարևիր բոլորին» գիրքը, որը ձոնված է «Եղիշե Չարենցին, Վահան Թոթովենցին, Գուրգեն Մահարուն, Հայաստանի բանաստեղծներին. արձակագիրներին. թատերագիրներին և նրանց զավակներին ու թոռներին»:*

*Այս գրքում տպագրված են Սարոյանի՝ իր մեռած հարազատներին, ինչպես նաև Եղիշե Չարենցին, հայ և օտար նշանավոր մարդկանց ուղղված նամակները, ավելի ճիշտ. նամակ-նովելները:*

*Ստորև տպագրում ենք Վիլյամ Սարոյանի «Վահան Մինասյան» («Կարևորը՝ ողջ լինել») նամակ-նովելը:*

*ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆ*

---

**բանվորական հագուստի, ապակիներն էր սրբում մի երիտասարդ կին:**

**— Օգնող են տվել,— ասաց Հակոբյանը՝ հասկանալով:**

**— Ոչ թե տվել են, այլ ինքն է եկել կամավորաբար: Ձեր հարևանուհին է, նա արդեն փոխադրվել է՝ իր ընտանիքով:**

**Հակոբյանն անցավ մյուս սենյակը՝ շնորհակալություն հայտնելու հարևանուհուն: Ոտնաձայնի վրա երիտասարդ կինը ետ նայեց և այծի թեթևությամբ վար ցատկեց լուսամուտի գոգից՝ ջնջոցը ձեռքին, շփոթված:**

**Հակոբյանը նայեց նրան և հասկացավ ամեն ինչ՝ և՛ առաջին նամակը փոստարկղում, և՛ հետադարձ հասցեի բացակայությունը...**

**— Իմ սիրելի Սահակյա՜ն...— շշնջաց Հակոբյանը:**

**Եվ շնորհակալության ջերմ զգացումով ուսուցիչը գրկեց իր երբեմնի աշակերտուհուն:**

# ԿԱՐԵՎՈՐԸ՝ ՈՂՋ ԼԻՆԵԼ...

*ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ*




Երբ մտածում եմ, թե ինչքան շատ ժամանակ է անցել մեր վերջին հանդիպումից, դժվարանում եմ հավատալ, որ դեռևս ես կամ, գոյություն ունեմ, և ավելին՝ սկսում եմ կասկածել, թե արդյո՞ք իրոք այդ ես էի, որ հանդիպեցի քեզ: Մեր առաջին, կարևոր հանդիպման ժամանակ ասած քո խոսքերը մինչև հիմա էլ հիացմունք են պատճառում ինձ:

1917-ին ես մեկ արծաթե դոլլար վճարեցի գնելու համար նիկելապատ այն կրծքանշանը, որը «Տհը Ֆրեզնո իվնինկ հերալդ» թերթը վաճառող յուրաքանչյուր տղա ստիպված էր գնել և կրել իր վրա: Այն շատ նման էր ոստիկանի կրծքանշանին, բայց իրականում ոչ մի իմաստ չուներ: Ես կրծքանշանը գնեցի դժկամությամբ և կողոպտված լինելու զգացումով: Նրա վրա փորագրված էին բազմաթիվ բառեր, որոնք պետք էր կռահել, որ թերթի անունն էին՝ «Տհը Ֆրեզնո իվնինկ հերալդ», կային նաև «Լրագրավաճառ № 8» բառերը: Այդ թիվը կարող էր իմ համարը չլինել, այլ որևէ ուրիշ մի թիվ, որովհետև կրծքանշանները վաճառվում էին «ով առաջինն է գալիս՝ նա էլ առաջինն է գնում» սկզբունքով: Կրծքանշանն ամրացրի իմ բրդյա վերնաշապիկի վրա, որը գնված էր «Ուեստըրն Սեյլս» կոչված բանակի մնացուկները վաճառող խանութից: Վերցրեցի թերթերս և վազեցի քաղաք: Այդ օրերին վաճառելու հատուկ անկյուն չունեի, անընդհատ շարժման մեջ էի, վաճառում էի որտեղ կարող էի: Մեկ-մեկ նայում էի կրծքանշանիս, բայց քիչ հետո մոռացա այդ մասին:

Երբ ծախեցի պրծա իմ բոլոր քսան թերթերը և կես դոլլարի իմ օգուտը գրպանումս պատրաստվում էի տուն գնալ և ճաշել, հանկարծ նկատեցի, որ կրծքանշանս չկա:

Երևի ընկել էր ինչ-որ տեղ, ուստի փոխանակ տուն գնալու, սկսեցի նորից անցնել բոլոր այն տեղերով, ուր շրջել էի երկու թե երեք ժամ: Ամենուրեք որոնեցի, բայց չգտա կրծքանշանս: Նորից ու նորից կրկրեցի անցա այս ամբողջ ճանապարհը՝ մտածելով. «Եթե չգտնեմ իմ կրծքանշանը, գուցե գտնեմ մեկ ուրիշինը, որովհետև եթե ես կարող էի կորցնել իմը, մեկ ուրիշն էլ կարող էր կորցնել իրենը, բայց եթե ես կրծքանշան չգտնեմ, գուցե մի ուրիշ բան գտնեմ»:

Ես անպայման ուզում էի ինչ-որ բան գտնել, որովհետև մեկ դոլլարը ահագին դրամ էր, իսկ այդ օրերին որևէ տեսակի կորուստ ինձ թվում էր մեծ դժբախտություն: Ամբողջ քաղաքում փնտրեցի իմ կորցրած կամ մի ուրիշի կորցրած կրծքանշանը և կամ կորած որևէ իր: Ես նույնիսկ շեղվեցի իմ անցած ճանապարհից և սկսեցի որոնել ամենուր:

Այսպես շատ ման եկա, բայց չգտա ոչ իսկ մեկ դահեկան, ոչ իսկ մեկ մեխ կամ կոճակ: Իհարկե, շատ կայրացա: Չարաչար աշխատել էի կես դոլլար վաստակելու համար, ապա նույնքան և ավելի չարչարվել էի գտնելու համար իմ կամ մեկ ուրիշի կորցրած կրծքանշանը և ոչինչ չէի գտել: Քաղցած էի, ծարավ, հոգնած և հուսախաբված, թեև այդ օրերին այս վերջին բառի լրիվ իմաստը կարող էր իմ հասկացողությունից վեր լինել: Պարզապես պարտված էի և ատում էի պարտությունս:

Երբ տուն հասա, մայրս անմիջապես հասկացավ, որ ինձ ինչ-որ բան է պատահել, ուստի խոստովանեցի ամեն ինչ: Նա պարզապես նայեց ինձ, ոչինչ չասաց և իմ առջև դրեց մի մեծ աման խաղողի տերևով դոլմա: Չնայած սոված էի, բայց չկարողացա ուտել: Երբ սեղանից վեր կացա, մայրս հարցրեց.

— Ի՞նչ կա, այդ ո՞ւր:

— Գնում եմ քաղաք՝ կրծքանշանս փնտրելու:

— Բայց արդեն փնտրել ես:

— Պետք է փնտրեմ, մինչև գտնեմ:

Վազեցի քաղաք և նորից ամեն տեղ ման եկա, սրտնեղությունս հետզհետե ավելացավ, բայց նորից ոչինչ չգտա:

Չափազանց հոգնած՝ դանդաղորեն տուն վերադարձա, բայց ներս չմտա, նստեցի տան շեմին, աստիճանների վրա, անիծելով իմ բախտը, ջանալով հասկանալ, թե ինչպես և ինչու էր պատահել այդ փորձանքը և ես ինչու չէի կարողացել գտնել կրծքանշանը՝ այդքան երկար և ուշադիր փնտրելուց հետո:

Եվ ահա երևացիր դու: Դու եկար և փողոցի վրա գտնվող քո տնից՝ քայլելով Սեն Բենիտո փողոցն ի վար, դու, իմ մորաքրոջ ամուսինը, դու՝ հայրը իմ Ռոքսի, Զավ, Հելեն, Արչի, Կիրկ և Ստելա կարմիկների: Ես իսկապես ամաչեցի, որ նման մի պահի որևէ մեկը կարող էր նկատել ինձ, բայց շատ էի հոգնած վեր կենալու և շենքի ետնամասը վազելու համար, և ուրեմն դու տեսար ինձ, տեսար իմ քաղցած ու վայրացած դեմքը:

— Ի՞նչ է պատահել, ասա՛ ինձ,—հարցրեցիր դու:

Դու իմ ընտանիքի առաջին չափահաս անդամն էիր, որ ինձ հետ խոսեց որպես հավասարը հավասարի: Եվ ես ճշտորեն պատմեցի քեզ ինչ որ տեղի էր ունեցել, ասացի, թե ինչպես էր այդ պատահել, և ահա հենց այդ րոպեին էր, որ դու վարմացրիր ինձ:

— Է՛, ա՞յդ է բոլորը,— ասացիր դու:— Մի կրծքանշան, որ մեկ դոլլա՞ր արժե: Վճարեցիր և անմիջապես կորցրեցի՞ր: Ոչինչ, դո՛ւ ողջ լինես:

Եվ հանկարծ ես ինձ լավ վգացի:

Ճիշտ է, կրծքանշանի կորուստը, մեկ դոլլարի կորուստը կար, բայց հիմա, քո այդ խոսքից, այն արտասանելու քո եղանակից հետո, ես հասկացա, թե եղածը ոչինչ էր, կորածը մի մեծ բան չէր, կարևորը ես էի, կարևորը, ինչպես դու ասացիր՝ իմ ողջությունն էր:

Այնուհետև ոչ ոք ինձ ավելի իմաստալից ու ավելի օգտակար բան չի ասել:

Մի քանի տարի հետո դու մահացար, երբ 36 տարեկան էիր, մոտավորապես այն նույն տարիքում, երբ հայրս էր մահացել:

Եվ այժմ չնայած ես քսան տարով ավելի մեծ եմ, քան դու և քսան տարով ավելի մեծ, քան իմ հայրը, բայց չգիտեմ՝ ինչպես հասկանամ անցած-գնացած ժամանակը և անցած-գնացած դեպքերը, որոնք ինձ, այնուամենայնիվ, դեռևս թողել են արտասահմանում ոչ միայն Ֆրեզնոյի, այլև ամբողջ աշխարհի փողոցներում, որտեղ ես ոչ թե անպայման փնտրում եմ կորցրած մի բան կամ գտնելիք մի բան, այլ պարզապես գնում եմ ու գալիս և որոնում:

*Անգլ. թարգմ. ՇԱՔԵ ՎԱՐՍՅԱՆԻ*

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*



# ԽՆԴԻՐ ԵՐԿՈՒ ԽՈՂՈՎԱԿՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*ՑՎԵՏԱՆ ՊԵՇԵՎ*

Թվաբանական խնդիրների ժողովածուի մեջ այդպիսի մի խնդիր կա: Ես անասելի կերպով չեմ սիրում խնդիրներ լուծել, իհարկե, ես դրանց վրա չէի էլ նայի, բայց թե տնային աշխատանք են տվել, ուզես-չուզես պիտի լուծես:

Եվ Դանիելը հենց դրա համար էլ եկավ:

— Խողովակների խնդիրը լուծե՞լ ես,— հարցրեց նա:

— Ո՛չ,— պատասխանեցի ես:

— Ա՜յ դու: Հայրդ տանն է, և դու չե՞ս կարողանում ստիպել նրան, որ լուծի:

— Իսկ ինչո՞ւ ինքդ քո հորը չես ստիպում:

— Նա տանը չի, քաղաք է գնացել: Եթե տանը լիներ, անպայման կլուծեր:

— Իմ հայրն էլ կարող է լուծել, բայց նա քնած է, գիշերը աշխատել է:

— Համենայն դեպս գնա նայիր,— ասաց Դանիելը:— Գուցե, արդեն արթնացե՞լ է:

Ես վերցրեցի խնդրագիրքը ու մտա մյուս սենյակը: Հայրս քնած չէր, ես շատ լավ էլ գիտեի, որ դեռ կես ժամ առաջ նա վեր կացավ ու գնաց ետնաբակ՝ մարգերը փորելու:

— Հայրի՛կ,— ասացի ես լուսամուտից կախվելով:— Կարո՞ղ ես ինձ համար մի խնդիր լուծել:

— Ի՞նչ խնդիր,— ասաց հայրս հենվելով բահին:

— Խնդիր, էլի,՜ երկու խողովակների մասին:

Հայրս մոտեցավ ինձ, վերցրեց խնդրագիրքը և սկսեց կարդալ, հետո նորից ու նորից կարդաց:

— Ո՛չ,— ասաց նա,— չեմ կարող:

— Իսկ Դանիելը ասում է, որ իր հայրը հեշտությամբ կլուծեր:

— Նա կլուծեր, որովհետև ինձանից շատ է սովորել: Իսկ ես քո հասակում արդեն աշխատում էի փռում, դու հո գիտես...

— Դե, իհարկե... Ես այդպես էլ գիտեի, որ չես լուծի, բայց ասացի, հարցնեմ:

— Խճճվել ես:— Հայրս շոյեց գլուխս:— Բայց փորձիր լուծել: Նկարիր ավազանը, մի քիչ մտածիր և կտեսնես, որ կստացվի:

Հայրս նորից գնաց իր գործին: Ես մի քիչ կանգնեցի լուսամուտի մոտ, տեսա, թե ինչ համաչափ շարժումներով նա բահը խրում է չորացած հողի մեջ, ու մտածեցի, որ նրան պետք էր դեռ մի քիչ էլ քնել, որովհետև նա ամբողջ գիշեր աշխատել է փռում: Հետո հիշեցի, որ Դանիելը ինձ է սպասում:

— Գործերդ ինչպե՞ս են,— դիմավորեց ինձ Դանիելը:

— Կամա՛ց, մի՛ աղմկիր, հայրս քնած է,— շշնջացի ես:— Երբ արթնանա, կլուծի:

Դանիելը սկսեց թերթել «Սեպտեմվրիյչեի» վերջին համարը, իսկ ես նստեցի սեղանի մոտ ու սկսեցի նկարել ավազանը, երկու խողովակները: Պատկերացնենք, որ սա ավազանն է, իսկ սրանք էլ՝ խողովակները: Լայն խողովակով ջուրը լցվում է ավազանի մեջ, իսկ բարակ խողովակով արտահոսում է: Ավազանը բոլորովին դատարկ էր, և հանկարծ ջուր թողեցին: Ջուրը լցվում է ավազանի մեջ, ժողովուրդը սպասում է, թե երբ կլցվի, նրանք մոռացել են, որ հանդիպակաց կողմում բարակ խողովակով ջուրը արտահոսում է: Լցվող ջուրը շատ է, իսկ արտահոսողը՝ քիչ...

— Ես գնացի՜,— բղավեցի ես:

— Ո՞ւր,— կարմացավ Դանիելը:

— Գնամ հորս արթնացնեմ,— ասացի ես կամաց:— Նա արագ կլուծի խնդիրը ու էլի կքնի:

Ես մտա հորս սենյակը, նստեցի մահճակալի վրա և շատ հանգիստ սկսեցի լուծել: Պարզվում է, որ հայրս իրավացի էր, բոլորովին այլ է, երբ նկարում ես ավազանն ու խողովակները: Եվ խնդիրն էլ ինձ ավելի հեշտ թվաց, քան սկզբում:

— Տեսնո՞ւմ ես, հայրդ ինչ գեղեցիկ ձեռագիր ունի, բոլորովին քո խզբզածը չի,— ասաց Դանիելը, երբ ես նրան ցույց տվեցի լուծումը:

— Հապա ինչպե՞ս է նկարում: Մի անգամ քեզ նայի, բավական է, արդեն կնկարի... Իսկ այսպիսի խնդիրներ, նա օրական հազար հատ կլուծի:

Ես դուրս եկա Դանիելին ճանապարհելու, և այստեղ կատարվեց այն, ինչից ամենից շատ էի վախենում: Դանիելը տեսավ հորս:

— Ի՞նչ է անում նա այստեղ:

— Ինչպե՞ս թե ինչ: Տեսնում ես՝ փորում է:

— Բայց մի՞թե նա սենյակում չէր:

— Այո, նա... նա այնտեղ էր...— կմկմացի ես:

— Հապա ինչպե՞ս է դուրս եկել:

Ես ծիծաղեցի:

— Գիտե՞ս, հայրս լուսամուտից թռչելու սովորություն ունի: Հիմա էլ լուսամուտից է դուրս եկել:

— Ի՞նչ հետաքրքիր հայր ունես,— նախանձով ասաց Դանիելը,— իսկ իմ հայրը սովորական է, միշտ միայն դռներից է ներս ու դուրս անում:

*Թարգմ. Ա. ՍԱՀԱԿՅԱՆԻ*





*Լրացավ հայ ականավոր առակագիր ու մանկական գրող Աթաբեկ Խնկոյանի ծննդյան 100-ամյակը։*

*Ո՞վ չի կարդացել նրա «Մկների ժողովը», «Գյուղացին ու արջը», «Պոչատ աղվեսը», ո՞ւմ չեն հմայել նրա բազմաթիվ առակներն ու բանաստեղծությունները, հեքիաթներն ու պոեմները։*

*Տասնամյակներ են անցել։ Եվ այսօր էլ այդ ստեղծագործությունները նույն սիրով ու հետաքրքրությամբ են ընթերցվում թե՛ մանուկ և թե՛ հասակավոր ընթերցողների կողմից։*

# ՄԵՐ ԽՆԿՈ-ԱՊԵՐԸ

ԳԵՂԱՄ ՍԱՐՅԱՆ

Աթաբեկ Խնկոյանի հետ ես ծանոթ էի նրա ստեղծագործություններով։ Աշակերտական տարիներին հաճախ էի կարդացել նրա մանկական պոեմներն ու բանաստեղծությունները, նրա համով առակները։

Մեր դպրոցում մի պատանի այնքան սքանչելի էր արտասանում Խնկոյանի «Մկների ժողովը», որ մինչև այսօր էլ հիշում եմ նրան և ինձ թվում է, որ նրանից բացի ոչ ոք չէր կարող այդքան արտահայտիչ կերպով արտասանել այդ առակը։

Բայց ահա և առիթը ներկայացավ, և ես ծանոթացա նրա հետ Երևանում։ Մտքովս չէր անցնում, որ այդքան հիանալի առակների հեղինակը կարող էր լինել այդքան մատչելի, պարզ և հարազատ։

Աթաբեկ Խնկոյանը գյուղացի մարդ էր և չնայած արդեն վաղուց ի վեր թողել էր գյուղը և ապրել քաղաքներում, շփվել քաղաքի հասարակության, հատկապես գրողների շրջանում, սակայն և այնպես պահել էր գյուղացու պարզությունն ու միամտությունը, նրա անմիջականությունն ու ժողովրդայնությունը։ Նա առաջին հանդիպմանը իսկ կարող էր մտերմանալ մարդու, մանավանդ երիտասարդ գրողի հետ։

Այդպես պատահեց և ինձ հետ։

— Սարիկ ջան,— նա ինձ այդպես էր կոչում,— դու որտեղացի՞ ես։ Ծնողներ ունե՞ս։ Որտե՞ղ ես սովորել։ Ի՞նչ գործով ես զբաղված։

Եվ ես մի առ մի պատասխանելով Աթաբեկ Խնկոյանի հարցերին, այնպես էի զգում, որ ինձ հետ խոսում է իմ հին մի բարեկամը, ինձ համար սիրելի ու հարազատ մարդ։ Հետագայում ինձ բախտ վիճակվեց նրան ավելի մոտիկից ճանաչել, այդ բարի և սիրելի մարդուն։

Հիշում եմ նրա մի ելույթը։

Գրողների համագումար էր։ Այդ համագումարում միանալու և մի միություն էին կազմելու Հայաստանի պրոլետարական գրողների ասոցիացիան և գրողների «Նոյեմբեր» միությունը, որը գործում էր Եղիշե Չարենցի նախագահությամբ։ Ես նոյեմբերական էի և մասնակցում էի այդ համագումարին։

Համագումարին զեկուցեց Հայկ Գյուլիքևխյանը։ Նրա զեկուցումը հիմնականում նշում էր այն ուղիները, որով պետք է զարգանար պրոլետարական գրականությունը։

Զեկուցման շուրջը բացվեց մտքերի փոխանակություն, հանդես եկավ նաև Աթաբեկ Խնկոյանը։

Նա խոսում էր պարզ, ժողովրդական բառ ու բանով համեմված և իրեն հատուկ առակներով ու ասածվածքներով։

Եվ ահա իր խոսքը վերջացրեց հետևյալ խոսքերով.

— Ընկեր Գյուլին ասաց սիմ-սիմ. բայց սիմավոն չասաց։ Փող է հարկավոր, փող, փող...

Դահլիճը ծիծաղեց ու ծափահարեց։

Գյուլին, այդպես էին կոչում Գյուլիքևխյանին մտերմաբար, իր վերջին խոսքում, խիստ պատասխանեց Խնկոյանին և, իհարկե, ոչ սպառնալիք արտահայտելու նպատակով, որովհետև Գյուլին բարձր կուլտուրայի տեր և շատ սիրելի մարդ էր, ասաց.

— Ընկեր Խնկոյանի հետ պետք է ուրիշ կերպ խոսել։

Բայց ա՛լ թե ինչ է տեղի ունենում հենց այդ գիշերը:

Այժմյան արդարադատության շենքի հետևը կար մի ճաշարան, որ հայտնի էր «Երրորդ ճաշարան» անունով: Աթաբեկ Խնկոյանը ապրում էր այդ ճաշարանի վրայի սենյակներում:

Քննչական օրգանները փնտրելիս են լինում մի ոճրագործի: Փնտրտուքի հետքերով այդ գիշեր գնում բախում են Խնկոյանի բնակարանի դուռը և ներս մըտնելով սկսում են փնտրել իրենց ուզածը: Խնկոյանը սարսափում է և իսկույն հիշում է Գյուլիքեխյանի խոսքերը.

— Այս էր հա՞, Գյուլի՛... այս էր, հա՞, քո «ուրիշ կերպ» խոսելը... Վա՜յ, Գյուլի՛... այս էր, հա՞...

Այդպես մրմնջում է Խնկոյանը: Իսկ մինչ այդ փնտրողները իրենց ուզածը չգտնելով, ներողություն են խնդրում Խնկոյանից, թողնում գնում են:

Հետևյալ օրը այդ լուրը տարածվում է քաղաքում՝ հատկապես գրողների շրջանում: Երբ Գյուլին լսում է այդ մասին, մի կուշտ ծիծաղում է, Գյուլու ծիծաղը շատ հետաքրքրական էր: Նրա ծիծաղը նման էր ջրի խշշոցի:

Հետագայում, Խնկոյանի մահից հետո էլ Գյուլուն պատահելիս հիշում էինք Խնկոյանի խոսքերը.

— Այս էր հա՞... Գյուլի՛, քո «ուրիշ կերպ» խոսելը:

Եվ Գյուլու ծիծաղը խշշում էր:



Ես ընդունվեցի «Մաճկալ» և «Ավանգարդ» թերթերի խմբագրատանը իբրև այդ թերթերի սրբագրիչ: «Մաճկալ»-ի խմբագրատանը աշխատում էր նաև Աթաբեկ Խնկոյանը, որը այդտեղ գյուղացիների հետ ավելի մտերմաբար խոսելու, իր և նրանց հարազատությունը ցույց տալու համար իրեն վերակնքել էր և կոչվում էր նաև «Խնկո-Ապեր»:

Այստեղ Խնկո-Ապերը զբաղվում էր գյուղերից ստացվող բոլոր թղթակցություններով: Այդ թղթակցությունները, այնպես ինչպես հեղինակները էին ուղարկում, չէր կարելի տպագրել: Խնկո-Ապերը նորից գրում էր, համ ու հոտ էր մտցնում, նրանցից հարմարները ջոկում, ջոկջոկում էր և, եթե լինում էին այնպիսիները, որ կարելի էր չափածո գրել, չափածո էր դարձնում և տպագրում:

Խմբագրատանը բոլորի սիրելի խորհրդատուն էր Խնկո-Ապերը: Նրանց հետ հայրաբար խոսող, նրանց մխիթարողը:

Եթե թերթում որևէ տառասխալ կամ բառասխալ էր լինում, տխուր էի լինում այդ օրը:

Մի անգամ թերթում այսպիսի տողեր կային.

«Կոմսոմոլի կենտկոմը մի կոչ է ուղարկել գյուղերը մորեխի դեմ պայքարելու համար»: Վերջին համեմատության ժամանակ, ինչ-որ մի ստորակետ էր պետք եղել դնել, դրել էի ու գնացել: Առավոտյան թերթը լույս տեսավ և այնտեղ տպված էր՝ «Կոմսոմոլի կենտկոմը մի կով է ուղարկել գյուղերը մորեխի դեմ պայքարելու համար»:

Այդ սխալի համար ինձ մի լավ նախատեցին: Ամբողջ օրը ես տխուր էի: Ինձ հետ հայրաբար տխուր էր նաև մեր բարի, մեր լավ ծերուկը՝ Խնկո-Ապերը: Նա մխիթարում էր ինձ.

— Սարի՛կ ջան, բան չկա, մի՛ տխրիր, այդպիսի բաներ կլինեն: Սրբագրիչի աշխատանքը անշնորհակալ գործ է, ինչքան էլ աշխատես, որ սխալ չլինի, էլի մի բան կմնա:

Խնկո-Ապոր այսպիսի մարդկային վերաբերմունքի ու բարության համար էլ խմբագրության բոլոր աշխատակիցները, և ո՛չ միայն նրանք, այլև բոլոր մարդիկ, ովքեր ճանաչում էին, մեծ հարգանքով ու սիրով էին վերաբերվում նրան:

Այդ սերը առանձնապես արտահայտվում էր այն գրական երեկույթներին, որ կազմակերպում էր գրողների միությունը բանվորական կոլեկտիվների համար՝ գործարաններում և գյուղացիների համար՝ գյուղական վայրերում:

Գնում արտասանում էինք: Եվ պետք է ասել ժողովրդի հետ խոսելու ձևը, նրա ձգտումները ամենից լավ արտահայտելու պատիվը այդ տարիներին պատկանում էր Խնկո-Ապորը:

Նա իր գրվածքների մեջ արձարծում էր առօրյա հարցերը, թե՛ քաղաքական և թե՛ այլ բնույթի:

Գրական երեկոն բացվում էր նռանով:

Նա կարդում էր նստած, որովհետև ոտները ցավում էին և կարդում էր օրվա այրող հարցերին նվիրված իր չափածո ֆելիետոնները ու ոտանավորները:

Մինչև հիմա էլ կարծես ականջիս մեջ հնչում է Խնկո-Ապոր ձայնը, դիվանագիտական պայքարի մասին գրած նրա չափածո տողերը:

Կամ եթե գրական երեկույթի էինք գնացած լինում մարտի 8-ի առթիվ, Խնկո-Ապերը կարդում էր հենց այդ օրը գրած իր ոտանավորը տոնի հետ կապված.

Մարտի ութին
Իմ Յաղութին
Սողոմութին,
Ջանսարութին...

Բոլոր դահլիճներում Խնկո-Ապորը ընդունում էին որոտընդոստ ծափահարություններով, և նա ամենահարգելի հյուրն էր գյուղացիների և բանվորների երեկույթներում:

* * *

Խնկո-Ապերը սիրում էր հանգերով խոսել։ Մի անգամ շատ վշտացած էր։ Իր հասակակից մի գրողի կոչում էին տվել, իրեն՝ ոչ։

— Սարի՛կ ջան, չտվին կոչում, թողեցին պոչում։

Այդպես ասում էր նա, ոչ միայն ինձ, այլև շատ ուրիշներին։

Խնկո-Ապոր հետ ջերմ բարեկամական կապերի մեջ էր Ռոմանոս Մելիքյանը։ Մեծ կոմպոզիտորը շատ էր սիրում նրան, նրա ստեղծագործությունները, և նրա խոսքերի վրա գրել է մի շարք երգեր։

Շատ անգամ, երբ Ռոմանոս Մելիքյանը գալիս էր Թբիլիսիից, գնում էր Խնկո-Ապոր տունը և նրա մոտ էլ ապրում էր մինչև վերադարձը։

Վերջին տարիները Խնկո-Ապոր առողջությունը քայքայվել էր։ Բայց նա միշտ պահպանում էր իր կենսուրախությունը։ Գրողների միությունը հարց էր հարուցել տոնել Խնկո-Ապոր հոբելյանը։ Արդեն կազմըվել էր հոբելյանական հանձնաժողով։ Հանձնաժողովը որոշել էր, թե որ կազմակերպությունից ով պետք է ողջունի հոբելյարին։ Ստեփան Զորյանը կատակով ասում է.

— Խնկո՛-Ապեր, բոլոր կազմակերպություններից ողջունողներ կան։ Բայց դու ամենից շատ կենդանիների մասին ես գրել։ Կենդանիների՞ կողմից ով պիտի ողջունի։

Խնկո-Ապերը ծիծաղելով պատասխանում է.

— Ստեփա՛ն ջան, կենդանիների կողմից էլ դո՛ւ ողջունիր...

Զորյանը հաճախ էր հիշում Խնկո-Ապոր այս սրամիտ պատասխանը, տեղն ընկած պատմում էր և ծիծաղում էինք։

Խնկո-Ապերը չարժանացավ իր հոբելյանին։

Նախօրյակին նա վախճանվեց, և Հայաստանի գրական հասարակայնությունը այն ծաղկեփնջերը, որ պատրաստել էր նվիրել նրա հոբելյանի առթիվ, դրեց նրա գերեզմանին։

Շատ տարիներ են անցել նրա մահվան օրից, բայց մենք միշտ հիշում ենք նրան և նրա գրվածքները մնում են մեր մանկական գրականության մեջ իբրև նրա ամենագեղեցիկ, ամենաշքեղ զարդերը։

# Գայլն ու կատուն

ԽՆԿՈ-ԱՊԵՐ



Գայլն անտառից
Փախավ գեղը.
— Նե՛ղն եմ, նե՛ղը,—
Ասավ կատվին,—
Ասլա՛ն բալա,
Քո հոր պատվին
Մի ճա՛ր արա։
Մի տե՛ս հլա,
Որսորդ ու շուն,
Թազի, թուլա
Միսս են կրծում,
Ինձ հալածում։
Ա՛յ կտրվի
Դրանց հոտը,
Մի մա՛րդ ցույց տուր,
Պահվեմ մոտը։
— Ա՛յ ցեղակից,— գոչեց կատուն,—
Գնա՛ մտիր Մարոյենց տուն.
Նա չափազանց բարի կին է։
— Ես էլ գիտեմ, որ անգին է,
Բայց որ նրա հորթն եմ կերել...

— Բկիդ կանգներ, լավ չես արել։
Ա՛յ, Դավթի մոտ, կուզե՞ս կանչեմ։
— Նրանից էլ ես կամաչեմ.
Հենց ամառը
Կերա Դավթի փոքրիկ գառը...
— Ո՞ւմ ասեմ էլ...
Հա՛, մեր Զաքին։
— Էս գարնանն էլ՝
Նրա մաքին...
— Ո՞վ մնաց էլ.
Հա՛, երեցը։
— Էս աշնանն էլ՝
Նրա էծը...
— Ա՛յ դու ուտես
Չոռի մեծը։
Քանի՞սն եղավ.
Հի՛նգը... վե՛ցը...
Ա՛յ անամոթ,
Ի՞նչ երեսով
Դու գյուղ մտար,
Ի՞նչ է, ուրիշ
Տեղ չգտա՞ր։
Գյուղն հիմա՞ր է,
Որ թշնամուն
Պատսպարե։
Ով ինչ բրթե,
Էն կխրթե։

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# Ո Ղ Ջ Ո Ւ Յ Ն, Բ Ա Ր Ե Վ,

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՈՐԲՈՎՍԿԻ*

## 1. ԺԵՍՏ ԵՎ ԽՈՍՔ

Գիշերը ջունգլիներում ձայներ են հնչում.

— Օտարերկրացինե՛ր, այդ ո՞ւր եք գնում,— լսվում է մեկի ձայնը:

— Այդ ո՞ւր եք գնում,— կրկնում է երկրորդը:

— Այս երկիրը ձեզ չի ուզում ընդունել,— նորից առաջինը:



— Չի ուզում ընդունել,— կրկնում է երկրորդը:

— Բոլորը ձեր դեմ են,— ասում է առաջինը:

— Ձեր դեմ են,— կրկնում է երկրորդը:

— Եվ ձեզ կսպանեն,— ասում է առաջինը:

— Կսպանեն,—կրկնում է մյուսը:

— Ա՜խ-ա՜խ, ա՜խ-ա՜խ,— հառաչում է առաջինը:

— Ա՜խ-ա՜խ,—արձագանքում է երկրորդը:

Բայց մի՛ վախեցեք, օտարերկրացինե՛ր, ձեզ ձեռք չեն տա: Ոչ ոք չի նեղացնի ձեզ: Գիշերային ջունգլիներում հնչող այս երկախոսությունը Կենտրոնական Աֆրիկայի որոշ ցեղերի մեջ ողջունելու ծեսի ընդունված ձևն է:

Դարեր շարունակ մեր մոլորակի վրա հնչել են ողջույնի խոսքեր: Ռուսաստանում, օրինակ, իբրև մեծ հարգանքի նշան, ծնկի էին գալիս, գետնատարած խոնարհվում, երկրպագում: Եվ այդ անելիս, ինչպես ականատեսն է գրում, կարելի էր պարզ լսել հատակին դիպչող գլխի հարվածի ձայնը: Իսկ երբ հանդիպում էին հավասար դիրքի տեր մարդիկ, ապա պարզապես խոնարհվում էին՝ ջանալով, սակայն, որ դիմացինն իրենից ավելի խոր խոնարհում չանի: Եվ քանի որ ոչ մեկը չէր ուզում պակաս քաղաքավարի երևալ, ապա խոնարհվում էին երեք-չորս անգամ «փոխադարձ հարգանք ցույց տալու մեջ մրցման մեջ մտնելով»:

Հանդիպելիս մարդիկ միմյանց ցանկանում էին այն, ինչ նրանց կյանքում ամենակարևորն էր, ինչի պակասն ամենից շատ էին զգում: Միշտ չէ, որ դա առողջ լինելու բարեմաղթություն էր: Դեռևս կայսրական Չինաստանում սովորություն կար հանդիպելիս այսպես դիմել միմյանց.

— Կերե՞լ ես արդյոք:

— Կերե՞լ ես արդյոք:

Իսկ հնադարյան պարսիկներին, ըստ երևույթին, ավելի մտահոգում էր մարդու հոգեկան վիճակը, ուստի միմյանց ողջունում էին այսպես.

— Ուրախ եղիր:

Այդ նույն ցանկությունը հայտնեց աշխարհակալ Թեմուրը, երբ հանդիպեց Էմիր Հուսեինին.

— Թող պայծա՜ռ լինի դեմքդ,— գոչեց կաղ նվաճողը՝ գրկախառնվելով Էմիրի հետ:

Ուրիշ ի՞նչ կարող էր ցանկանալ Թեմուրը հզոր Էմիրին: Խաղաղությո՞ւն: Բայց ինչպե՞ս կարող էր այն մարդը, որի արհեստը պատերազմն էր, խաղաղություն մաղթել իր արհեստակցին: Առողջությո՞ւն և երկար տարիների կյա՞նք: Բայց Միջին Ասիայում, այն դարաշրջանի իշխողները երկարակեցությամբ աչքի չէին ընկնում: Ջուր չէ, որ ինքը Հուսեինը շուտով սպանվեց հենց նույն Թեմուրի աջակցությամբ:

Այդպես էլ դարեր շարունակ պահպանվեց երկու բռնակալների միմյանց ասած խոսքը.

— Թող պայծառ լինի դեմքդ:

Իսկ այն ժամանակ, երբ Թեմուրը պարտվածների կտրված գլուխներից բուրգեր էր կանգնեցնում, հասարակ մարդիկ միմյանց հանդիպելիս այսպես էին ասում.

— Խաղաղություն ձեզ:

— Խաղաղություն, առատություն և աստծո ողորմածությունը ձեզ:

Որքան կարոտ պիտի լինեին մարդիկ, և մարդկային շատ սերունդներ խաղաղության, որպեսզի հանդիպելիս այսպիսի խոսքով ողջունեին իրար: Գուցե այս ողջույնը նույնքան հին է, որքան և պատերազմը:

— Խաղաղություն ընդ քեզ:

Հանդիպելիս մարդիկ ամեն օր երդումի նման կրկնում էին այդ խոսքերը: Բայց ինչպես բոլոր մաղթանքները, այս անկոր խոսքն էլ չէր օգնում: Դարեր շարունակ աշխարհիս երեսին չէր լռում ճակատամարտերի շռինդը, այրվում էին պաշարված քաղաքներն ու հանձնվում հաղթողի ողորմածությանը:



Եվ իրենց հնադարյան իմաստությամբ, ասես հասկանալով բոլոր բարեմաղթությունների ապարդյուն լինելը, լուլուների ցեղի մարդիկ, օրինակ, միմյանց ողջունում էին այսպիսի պարզ խոսքով.

— Ես քեզ տեսնում եմ:

Եվ դիմացինն էլ պատասխանում էր.

— Ես քեզ տեսնում եմ:

# ԲԱՐԵՎՀԱՄԲՈՒՅՐ

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱԿՅԱՆԻ*

Բայց ավելի առաջ, ողջույնի խոսքից էլ առաջ, ըստ երևույթին, ծագել է ժեստը (որոշակի իմաստ ունեցող շարժում): Երբ կրոմանյոնյան ցեղի մարդը անտառապատ լեռան վրա որս անելիս տեսնում էր իր արհեստակցին և ուզում էր ցույց տալ, որ մտադիր չէ հարձակվել, բարձրացնում էր աջ ձեռքը: Այդ ժեստը կարծես թե ասում էր. «Տեսնո՞ւմ ես, ես անզեն եմ»:

Այդ ժեստը հայտնի էր հին Եգիպտոսում, ուր միմյանց հանդիպելիս, իբրև ողջույնի նշան, ձեռքը բարձրացնում էին ուսին հավասար, բայց ափը վեր պարզած. «Ես անզեն եմ, խաղաղություն քեզ»:

Որոշ ուսումնասիրողների կարծիքով այստեղից է գալիս ձեռք սեղմելու այսօրվա սովորույթը: Դա ապացուցելը նույնքան դժվար է, որքան և ժխտելը: Հայտնի է միայն, որ ձեռք սեղմելը, ինչպես և բարձրացնելը, ողջույնի հնագույն նշաններից մեկն է: Ձեռքսեղմումը շատ վաղուց հայտնի է եղել Ռուսաստանում: «Երբ պեչենեգների իշխանը կորապետ Սվյատոսլավին բարեկամության առաջարկ արեց, նրանք ձեռք տըվին իրար...»

Տարբեր ժողովուրդների մեջ գոյություն ունեցող ողջույնի շատ նշաններ գուցե և տարօրինակ թվան մեզ: Օրինակ, ինչ կասեիք դուք, եթե իբրև հարգանքի նշան, լեզու ցույց տային ձեզ: Մինչդեռ Տիբեթում այդ սովորությունը ողջույնի նշան է: Իսկ երբ մի անգամ Դավիթ Լիվինգստոնը իր ուղեկիցների հետ անցնում էր աֆրիկյան գյուղերից մեկով, ողջ բընակչությունը նրանց ճանապարհի էր զգում ծաղրուծանակով: Նույնիսկ Լիվինգստոնի նման փորձված ճանապարհորդը դժվարանում էր կռահել, որ դա ողջույնի նշան է:

2. «ԳԼԽԱՐԿՆԵՐԸ ՀԱՆԵԼ»

Առաջին հայացքից պակաս տարօրինակ չպիտի թվա, երբ իբրև ողջունելու նշան հանում են հագուստների զանազան մասեր: Հին Հրեաստանում մերկացնում էին ոտքերը՝ հանում էին կոշիկները: Ճապոնուհին իր ազգային ավանդի համաձայն, խուսափելով ձեռքսեղմումից, մերկացնում է ձեռքը, այսինքն հանում է ձեռնոցները: Ողջունելու այս ձևը մենք համարում ենք տարօրինակ: Այդ դեպքում, ինչո՞ւ այնպես բնական է թվում, երբ բարևելիս բացում են ոչ թե ձեռքերը, ոչ թե ոտքերը, այլ գլուխը: Թվում է, թե ինչ կա ավելի պարզ ու հասարակ, քան գլխարկ հանելը: Բայց ոչ, պարզվում է, որ դա այնքան էլ հասարակ բան չէ: Քանի՜-քանի անգամ գլխարկին տարվող ձեռքը կանգ է առել կես ճանապարհին: Ու երբեմն ի՜նչ հետևանքներ է ունեցել դա...

Հռչակավոր լուսավորիչ ու գիտնական Էրազմ Ռոտերդամցին վարվելաձևին նվիրած իր գրքում հատկապես ընդգծել է, որ երիտասարդը մեծահասակի հանդիպելիս անպայման պետք է գլխարկը հանի: Եվ ոչ միայն հանի, այլև հարգալից մի կողմ քաշվի կամ, ինչպես ինքը՝ Էրազմն է գրում. «նահանջի ցեխի մեջ»: Ռուս մի հեղինակ նույնպես մեր նախնիներին ջանում էր համոզել, որ «գլխարկը ձեռքին պահելը ամոթ չէ, այլ գովասանքի է արժանի...» Դրա հետ միասին բացատրում էր, թե ինչու պետք է դա արվի: «Ավելի լավ է մեկի մասին ասեն, թե նա վայելուչ, կուսպ ու անվեհեր ասպետ է, քան թե՝ անբարտավան հիմարի մեկն է»:

Բայց մենք գիտենք, որ առաքինության կոչերը, իբրև օրենք, աչքի չէին ընկնում համոզիչ լինելով: Իսկ երբ մեջտեղ էր գալիս նաև անձնական կամ, մանավանդ, պետական հեղինակության. նկատառումը, նման կոչերն առհասարակ կորցնում էին իրենց ուժը:

1613 թվականին գերմանական կայսրը, ռուսաց թագավորի բանբերին ընդունելիս, թագավորի անունը լսելիս, «հանեց գլխարկը»:

Անցավ մի տարի:

Գերմանական կայսրը իր գահադահլիճում դարձյալ ընդունում էր ռուսաց թագավորի բանբերին: Լավ սերտած, խիստ որոշակի խոսքով, դեսպանը ողջունում է կայսրին: Վերջինս պատասխա-



նում է նույն ձևով, պահպանելով ընդունված բոլոր կանոնները: Ամեն ինչ ընթանում է դիվանագիտական վարվելաձևի համաձայն: Տասնյակ աչքեր հետևում են նրա ամեն մի քայլին: Իսկ ականջները՝ կլանում ասված յուրաքանչյուր բառը: Անգիր արված, բազմիցս կրկնված արարողությունն ընթանում է իր կարգով, երբ հանկարծ տեղի է ունենում անսպասելին: Երբ ռուսաց դեսպանը հիշում է իր թագավորի անունը, կայսրը գլխարկը չի հանում: Դրա փոխարեն «տեղում նստած, ձեռքը թեթևակի դիպցնում է գլխարկին»:

Դեսպանն ընդհատում է իր խոսքը: Կայսրը նույնպես լռում է:

Տիրում է այնպիսի լռություն, որ սարսափելի է ամեն մի խոսքից: Եվ պողպատե ջղեր պետք էր ունենալ դիմանալու համար այդ ընդմիջումին: Քանի որ այդ հուսկայական դահլիճում դեմ-դիմաց կանգնած էին ոչ թե երկու մարդ, այլ երկու պետություն, որոնց անձնավորում էին այդ մար-

դիկ: Վերջապես դեսպանը խզում է լռությունը, ասելով, որ գերմանական կայսրը սովորույթին հակառակ է վարվում: Երբ կայսրը, այնուամենայնիվ, հրաժարվում է գլխարկը հանել, դեսպանը լքում է դահլիճը և ունկնդրությունն ավարտվում է:

Թե որքան մեծ նշանակություն էր տրվում այդ ժեստին, երևում է այն բանից, որ 1687 թվականին Ռուսաստանի և Բրանդենբուրգի կուրֆյուրստի միջև կնքված պայմանագրի մեջ հատկապես նշվում էր, որ կուրֆյուրստը թագավորի անունը պետք է լսի անպայման «գլխաբաց», այսինքն՝ պետք է հանի գլխարկը:

Ինչ վերաբերում է ռուսաց թագավորներին, ապա նրանք էլ ջանում էին ամեն կերպ խուսափել այդ ժեստից: Ըստ այն ժամանակվա հայացքների, նման վարքագիծը ուժեղացնում էր պետության և տիրակալի անձնական հեղինակությունը:

Ինչպես հայտնի է, Պետրոս Առաջինը անկարևոր բաներին նշանակություն չէր տալիս: Այնուամենայնիվ, օտարերկրյա դեսպաններին ընդունելիս նա դիտմամբ չէր ունենում «ոչ գլխարկ, ոչ էլ մի այլ բան, որ ծածկեր գլուխը»: Դրանով իսկ ցարը խուսափում էր նրանց առաջ գլխարկը հանելու անհրաժեշտությունից:

## 3. ՀՐԱԺԱՐՎՈՒՄ ԵՆ ՈՂՋՈՒՆԵԼ

1800 թվականի գարնանային մի մռայլ օր Մոսկվայի Յուսուպովյան այգում զբոսնում էր զինվորական համազգեստով մի մարդ: Հանդիպողները նրան հարգալից ճանապարհ էին տալիս, հանում գլխարկները և դողահար խոնարհվում: Ըստ երևույթին, նա հույժ կարևոր անձ էր: Նա շարունակում էր իր ճանապարհը: Հանկարծ, նկատելով դայակին երեխայի հետ, նա արագացնում է քայլերը և զայրացած դիմում նրանց կողմը: Նրա դժգոհության պատճառը այն էր, որ դայակը շփոթվել և չէր հանել երեխայի գլխարկը: Ցրվածության համար նախատելով դայակին, նա ինքն է հանում երեխայի գլխարկը: Երեխան, որ մոտ մի տարեկան էր, հետաքրքրությամբ նայում է զայրացած զինվորականի հետևից:

Այդ երեխան Պուշկինն էր:

Այսպես տեղի ունեցավ ապագա մեծ բանաստեղծի և թագավորի առաջին հանդիպումը:

Միայն մանկական հասակը փրկեց Պուշկինին կայսր Պավելի զայրույթից: Անկասկած է, որ եթե նրա ճանապարհին հասուն մարդ հանդիպեր՝ գործը ողբերգական վախճան կունենար: Նման տխուր օրինակներ շատ կան: Մի անգամ գվարդիական սպան մի տիկնոջ հետ զրույցով տարված չի նկատում մոտեցող թագավորին և չի հասցնում ողջունել նրան: Նույն օրն ևեթ սպան աստիճանազրկվում և աքսորվում է Սիբիր, իսկ նրա պետին բանտարկում են մի ամիս: Տիկնոջ ամուսինը, որ պետական բարձր պաշտոնյա էր, ծեծվում է:

Մի ուրիշ անգամ, երբ հայտնի վաճառականի տղան հապաղում է ողջույն տալ թագավորին, դանդաղկոտության համար ստանում է մտրակի 50 հարված: Պավել թագավորի նախորդները պակաս դաժան չէին վարվում նույն պարագաներում:

Իվան Ահեղին ամբողջ կյանքում հետապնդել է մի տանջալի հիշողություն, որ կապված էր նրա մանկական տարիների հետ: Համայն Ռուսիայի արքան, ամենահզոր միապետներից մեկը, որ հասել էր իր հզորության բարձունքին, չէր կարողանում մոռանալ մանուկ հասակում կրած նվաստացումը: Իշխան Կուրբսկուն գրած նամակում նա հիշում է այն ժամանակների մասին, երբ ամենազոր բոյար Շույսկին դաժանաբար էր վարվում իր՝ մանկահասակ թագավոր Իվանի հետ: Ինչպե՞ս: Պարզվում է, որ Շույսկին կարևոր չէր համարում ողջունել թագաժառանգին, բարևել նրան «...Եվ մեր առաջ չէր խոնարհվում»: Տղան այդ վիրավորանքը հիշում է ամբողջ կյանքում... «Նման ամբարտավանությունն ո՞վ կարող է տանել»,— դառնացած գրում է նա Կուրբսկուն: Ու թեպետ տասնյակ տարիներ էին անցել Շույսկուն մահապատժի ենթարկելու օրից, նվաստացման անփարատ դառնությունը առաջվա նման ճնշում էր արքայի կուրծքը և ելք փնտրում:

«...Եվ մեր առաջ չէր խոնարհվում»: Եթե մի մարդ հրաժարվում է մեկ ուրիշին ողջունել՝ նա պետք է ծանրակշիռ պատճառներ ունենար:

Բարոյական բնույթի նման պատճառներ ուներ, օրինակ, Կալիսթենեսը, որ հրաժարվեց գետնատարած ողջունել Ալեքսանդր Մակեդոնացուն:

Գետնատարած ողջույն տալու սովորույթին հույները ծանոթացել էին Պարսկաստանի դեմ մղած պատերազմում: Արևելյան այդ երկրպագությունն այնքան էր դուր եկել Ալեքսանդր Մակեդոնացուն, որ նա վճռել էր դա տարածել իր հպատակների մեջ: Եվ երբ Ալեքսանդրը, արքայական զգեստներով և արքայական տիտղոսի բոլոր նշաններով զուգված, հայտնվում է բազմության առաջ, նոր օրենքի համաձայն, բոլորը հլու-հնազանդ ողջունում են գետնա-



տարած. կանգնած է մնում միայն մի մարդ: Դա Կալիսթենեսն էր: Նա ոչ միայն ծնկի չի գալիս, ինչպես պահանջում էր արքայական

նոր հրամանագիրը, այլև հենց այդտեղ, բոլորի ներկայությամբ ամոթանք է տալիս Ալեքսանդրին՝ աստվածներին հավասար մեծարանքներ ընդունելու համար:

Բայց ահա թե ի՛նչն է կարևորը: Ալեքսանդրը լռում է իր քաջարի հպատակին: Եվ այդպես, Կալիսթենեսը «հույներին փրկում է նվաստացումից, իսկ Ալեքսանդրին՝ առավել մեծ նվաստացումից»,— գրել է Պլուտարքոսը:

Երբեմն կյանքի գնով էին հատուցում նրանք, ովքեր հրաժարվում էին խոնարհվել տիրակալի կամ նույնիսկ նրա պատկերի առաջ: Եթե նորից խոսենք հեռավոր ժամանակների մասին, կարելի է հիշել այն դեպքը, երբ մեծ իշխան Միխայիլ Չերնիգովսկին և նրա բոյար Ֆյոդորը Ոսկե Հորդայի բանակատեղում հրաժարվում են խոնարհվել Չինգիզ-խանի պատկերի առաջ:

Վառ գույնի, մորթերից խալաթներով խաները մռայլ հայացքներ են փոխանակում: Մեծ վրանի բարձր կտուրի տակ անտես սավառնող մահը անձայն իջնում է ներքև: Իշխանը նրա շունչն զգում է ավելի շուտ, քան կարտասանվեր այդ խոսքը:

— Նա ասում է,—անխռով ձայնով շարունակում է մրթմրթալ թարգմանիչը,— որ կամենում է մեռնել, քան անել այն, ինչ վայել չէ իրեն...

Իշխանին և բոյարին սպանելու համար, դուրս են բերում վրանից... Վրանում մարդկանց չէին սպանում, որպեսզի չարյունոտվեն թանկարժեք գորգերն ու մորթիները:

Գործելով ընդդեմ ընդունված սովորության, իշխան Չերնիգովսկու նման մարդիկ պաշտպանում էին Ռուսաստանի ազգային արժանապատվությունը նրա պատմության ամենամռայլ տարիներին:

Հրաժարվում են ողջունել...

Մենք տեսանք, որ նրանք, ովքեր հանդգնում էին դիմել այդ քայլին՝ դրա համար կարևոր պատճառներ ունեին: Եվ հանուն դրա նրանք շատ բան էին կոհաբերում: Երբեմն՝ կյանքը:

Բայց ի՞նչ անկոր, ի՞նչ ծիծաղելի բան է դառնում երբեմն միմյանց ողջունելուց հրաժարվելը մեր կենցաղում, երբ երկու հոգի խռովում են ու միմյանց բարև չեն տալիս:

*Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ*

## *Ճանաչի՛ր հայրենի բնաշխարհը*

# Գ Ո Ր Շ Ո Ւ Կ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*



*Թեև արտաքուստ և իր կենցաղով այս կենդանին շատ է տարբերվում կզաքիսից, բայց սա նույնպես կզաքիսների ընտանիքին է պատկանում:*

*Սա մի հաստլիկ, տափակ և ոտքերը կարճ կենդանի է: Գլուխը փոքր է ու սուր, թիկունքը՝ լայն է, իսկ գավակը՝ ավելի լայն: Դանդաղաշարժ է և բոլորովին ճկուն չէ:*

*Հասկանալի է, որ այսպիսի կազմվածք ունեցող կենդանին, որքան էլ որ գիշատիչ անունը կրի, չի կարող իր ապրուստը հայթայթել կենդանիներ որսալով, ուստի և մեր երկրի գիշատիչների մեջ գորշուկն ամենից անվնասն է: Նրա սնունդը կազմում են այնպիսի բաներ, որոնց ձեռք բերելու համար հարկավոր չեն ո՛չ ճարպիկ շարժումներ, ո՛չ վազք, ո՛չ թռիչք. ուտում է խաղող, հացահատիկ, թռչունների ձվեր ու ձագեր, եթե դրանք գետնին են: Մանկությանս վայրերում, հիշում եմ, սիրով ուտում էր մեր անտառների պտուղները, մանավանդ՝ կաղին և հաճար, որից աշնան ամիսներին խիստ գիրանում էր:*

*Ինչպես տեսնում եք, իր սննդով արջի է նման, և նրա նման է նաև արտաքինով: Իրոք, կարծես փոքրիկ արջուկ լինի: Երևի այդ է պատճառը, որ արևմտահայ գրականության մեջ նրան ասում են նաև եղեգնարջ: Մեզ մոտ՝ տարբեր տեղերում տարբեր անուններ են տալիս գորշուկին: Զանգեզուրում, օրինակ, քշերի են ասում, երևի այն պատճառով, որ միշտ գիշերն է դուրս գալիս իր խորը որջից և սընունդ հայթայթում: Լոռու, Դիլիջանի, Շամշադինի կողմերում գորշուկին տեղացիներն ասում են չչառուկ, Սևանի կողմերում՝ կոռաբաշ: Այլ բարբառներով՝ իշղար, կարաբաշ, փորսուղ:*

*Ասացինք, որ այս գիշատիչը ավելի շատ պտղակեր է, քան գիշակեր: Բայց պարզվում է, որ անցյալում մեր երկրի գորշուկներն ավելի են բուսակեր և պտղակեր եղել: Ինչի՞ց իմացանք: Սևանի ափին պեղած հին դամբարանների պեղումներից և Ուրծի լեռներում գտնված «կենդանիների գերեզմանատնից»:*

Այդ վայրերից շուրջ երեք հազար տարվա գորշուկների գանգեր են գտնվել, որոնց թամբաձև ատամները ավելի տափակ են և սրածայր չեն ներկայիս նման. մի բան, որ ցույց է տալիս, թե մեր ներկայիս գորշուկի նախահայրը՝ ուրարտական գորշուկը ավելի բուսակեր էր և ավելի քիչ մսակեր, քան ներկայիս գորշուկը:

Ասացի, որ անտառներում կաղին և հաճար ուտելով, գորշուկն աշնանը շատ է չաղանում: Այդպես էի



Դեռահաս գորշուկ

կարծում մանուկ ժամանակս, երբ ընկերներով որսում էինք այդ գազանից և մեր տատերը այն նեղ տարիներին նրա ճարպից սապոն էին պատրաստում: Թեև ինքը խոշոր չէ, կենդանի միջին քաշը մոտ 8 կիլոգրամ է, բայց, հիշում եմ, շատ չաղացածի միայն ճարպը 3—4 կգ էր լինում: Հետագայում, երբ որս էի անում անտառազուրկ վայրերում՝ Սևանի ավազանում, Հայոց ձորում, Ուրծի լեռներում, զարմանքով նկատում էի, որ այդ վայրերից իմ որսած գորշուկները նույնպես ճարպակալած են, թեև յուղոտ հաճար և կաղին չեն տեսնում իրենց կյանքում: Հասկացա, որ ինչով էլ սնվելիս լինի, աշնան վերջին ճարպի պաշար պիտի ունենա, որպեսզի քուն մտնի արջի նման: Այդ ճարպը նրա ձմռան «սնունդն» է, նրա մարմնի վառելիքը, ուստի աշնանը գիրանալը այդ կենդանու համար կենսական անհրաժեշտություն է, ուրեմն և պիտի անպատճառ գիրանա, ուր որ էլ լինի, այլապես կկործանվի:

Քուն է մտնում, երբ սկսվում են ձմռան ցրտերը: Բայց մի տարի ձմեռը տաք էր և մենք գորշուկների էինք հանդիպում հունվար և փետրվար ամիսներին Շորժայի ցանքերում և Արտանուշի հանդերում: Մեր Դիլիջանի ձորում ևս մեղմ ձմեռներին նկատել եմ, որ գորշուկը քուն չի մտնում կամ պարբերաբար արթնանում և դուրս է գալիս որսի:

Քնում է իր գետնափոր, խորը որջում: Արժե նկարագրել այդ որջը, որին ես մանկուց եմ ծանոթ: Դա մի բարդ կառուցվածք է, ստորերկրյա թունելների մի ամբողջ ցանց: Հրազդանի հանդում գորշուկի մի բույն եմ ուսումնասիրել, որ յոթ անցք ուներ, 12—16 քայլ իրարից հեռու: Դրանցից մեկը իր բնակարանի «գլխավոր մուտքն» է: Դա երևում էր նրանից, որ այդ մուտքից մի շավիղ տանում էր դեպի մոտակա աղբյուրը և իր որսի հանդամասը: Մեկ-երկու անցք նրա փախուստի ճանապարհներն են. մուտքի ներսում «ծուխ ես դնում», որ խեղդես, կամ որջամուտ շուն ես ներս խցկում, մեկ էլ տեսար՝ հեռվում փախչում է ափալ-թափալ. դուրս է վազել «պահեստի դռնից». Մյուս անցքերը օդափոխության համար են. չէ՞ որ գորշուկը կյանքի մեծ մասը անց է կացնում իր բնակարանում փակված, այնտեղ էլ մեծացնում է ձագերին, ուրեմն նրան ավելի է թարմ օդ հարկավոր, քան ուրիշ կենդանու:

Ասածս 6—7 անցքերից որով էլ ներս գնանք, կհասնենք գորշուկի բուն բնակարանին, որն այդ բոլոր անցքերի միացման կետում է: Դա մի ընդարձակ նկուղ է, որի կենտրոնում մամուռից, չոր խոտից և տերևներից փափուկ անկողին է պատրաստված: «Ձուլգարանը» դրսում է. գորշուկը գարշահոտություն և անմաքրություն չի սիրում: Նրա այդ բնավորությունից օգտվում է աղվեսը, որը հոտած ոսկորներ է տանում գորշուկի բույնը, կեղտոտում է նաև մաքուր անկողնու վրա: Վերադառնում է գորշուկը, տեսնում իր մաքուր բնակարանն ապականված և զզվում հեռանում է: Խորամանկ աղվեսին էլ այդ է հարկավոր, տեր է կանգնում պատրաստի բնակարանին: Դե գնա հիմա, խեղճ գորշուկ, թաթերովդ ամիսներ շարունակ հող փորիր, որ նոր տուն կառուցես քեզ համար...

Մեր հանրապետության բոլոր շրջաններում էլ հանդիպում է այս կենդանուց, բայց ավելի շատ այն վայրերում, ուր կան թփուտներ և անտառային բացատներ: Այդպիսի վայրերում թե՛ բույն փորելն է հեշտ (հողը փուխր է), թե՛ առատ է կերը:

Բայց ինչո՞վ բացատրել, որ մենք գորշուկների ենք հանդիպում նաև մեր երկրի բոլորովին մերկ մասերում, օրինակ՝ Սևանի ավազանում, Ուրծի լեռներում և այլուր: Եթե նկատի առնենք, որ ասածս վայրերը սրանից 2—3 հազար տարի առաջ ծածկված էին անտառներով և թփուտներով, կհասկանանք, թե որտեղից են այսօրվա գորշուկներն այդ տեղերում: Անտառները ոչնչացել են, բայց նրանց բնակիչները հարմարվել են մերկ վայրի բնական պայմաններին: Վեդուց արևելք ձգվող լեռներում ես նույնիսկ հայտնաբերել եմ անձավաբնակ գորշուկ... Այո՛, վայրի կենդանին ամեն ինչի հարմարվում է, միայն թե պահպանի իր գոյությունը:

ԲԱԶՄԱՑՈՒՄԸ: Մոսկվայի կենդանաբանական այգում գորշուկները զուգավորվում են մարտ ամսին և ծնում են 11—12 ամիս անց: Ձագերը շատ փոքր են լինում, ամեն մեկը մի ընկույզի չափ: Կույր են մնում 33—38 օր: Մայրը նրանց պահում է իր տաք մուշտակով շրջապատված, մեկ-մեկ էլ բերանն առած դուրս է տանում օդափոխության:

Այսքանը գորշուկի մասին:

Հաջորդ անգամ կծանոթանանք կզաքիսների ընտանիքի վերջին ներկայացուցիչին՝ ջրասամույրին:

# ՄԵՐ ԶԲՈՍԱՅԳԻՆԵՐԻ ԾԱՌԱՏԵՍԱԿՆԵՐԸ

Կանաչը մարդու լավագույն բարեկամն է: Զբոսայգիներն ու պուրակները, փողոցային տնկարկները մեղմացնում են շոգը, օդը հարստացնում թթվածնով ու ջրային գոլորշիներով, պայքարում փոշու, ծխի, վնասակար գազերի, աղմուկի դեմ, հատուկ ցնդող նյութեր՝ ֆիտոնցիդներ արտադրելու շնորհիվ սպանում վնասակար միկրոբներին և այլն: Ծառերն ու թփերը ունեն նաև տնտեսական մեծ նշանակություն, պտուղ են տալիս, հումք են հանդիսանում զանազան տեխնիկական նյութեր ստանալու համար: Բացի այդ, կանաչը ճարտարապետական կարևոր էլեմենտ է և գեղեցկացնում է բնակավայրերը, լրացնում դրանց գեղարվեստական կերպարը, կարդարում մեր կենցաղը:

Երևանը գտնվում է կիսաանապատային գոտում, որտեղ բնական պայմաններում ոչ մի ծառատեսակ չի աճում: Ինչ որ դուք տեսնում եք զբոսայգիներում ու պուրակներում, քաղաքի կանաչ գոտում, Արարատյան դաշտավայրի բնակավայրերում, արհեստական անտառներում, դրանք բոլորն էլ բերված են այլ վայրերից և աճում են միայն մարդու ջանասեր աշխատանքի շնորհիվ: Բավական է, որ դադարեցվի խնամքը, և այդ բոլոր ծառատեսակները 1—2 տարուց հետո լրիվ կոչնչանան: Այդպես չէ Հայաստանի անտառային շրջաններում, որտեղ մեկ անգամ տնկած ծառը առանց խնամքի կարող է հասակ առնել, պտուղ տալ և ապրել երկար տարիներ: Կան այնպիսի ծառատեսակներ, որ Հայաստան են ներմուծված մի քանի հազարամյակ առաջ: Այժմ դժվար է որևիցե մեկին համոզել, որ, օրինակ՝ ծիրանը, որին նույնիսկ եվրոպացիները տիպիկ «հայկական» բույս են անվանում, բոլորովին էլ հայկական չէ: Մեր աշխատասեր նախնիները այդ բույսը Հայաստան են բերել Չինաստանից մոտ 3000 տարի սրանից առաջ և լայնորեն տարածել մշակության մեջ: Նույն բանը կարելի է ասել նաև թթենու, դեղձենու մասին: Սրանք ևս չինական բույսեր են: Իսկ ըսպիտակ ակացիան, որը Հայաստանում մշակվում է ամենուրեք, բերված է Հյուսիսային Ամերիկայից մոտ 150 տարի առաջ:

Ներկայումս Երևանի կանաչ տնկարկներում հանդիպում են ավելի քան 230 տեսակի ծառեր ու թփեր: Դրանք բերված են երկրագնդի բազմազան գոտու ամենատարբեր երկրներից: Մեր բոլոր դպրոցականները պետք է ճանաչեն, խնամեն ու պահպանեն այդ բույսերը, ուսումնասիրեն դրանց կենսաբանական առանձնահատկությունները:

Այժմ ձեր ուշադրությանն ենք ներկայացնում Երևանի կանաչ տնկարկներում հաճախ հանդիպող ծառատեսակներից մի քանիսը:

## ՍՈՍԻ

Չնայած այն հանգամանքին, որ այս ծառատեսակը տնտեսապես պիտանի չէ, ոչ պտուղներն են ուտվում, ոչ շինափայտ է տալիս, ոչ էլ նույնիսկ փայտը կարելի է օգտագործել որպես վառելիք, այնուամենայնիվ պատմական Հայաստանում սոսին շատ էր տարածված, քանի որ սրբազան ծառ էր համարվում: Հեթանոս հայերը հավատացած էին, որ սոսին



*Սոսի արևելյան*

գերբնական ուժ ունի: Քրմերը ունկընդրելով տերևների սոսափյունին, կանխագուշակություններ էին անում: Սոսու սրբազան պուրակ կար Արմավիրի հեթանոսական տաճարի մոտ: Ավանդություն կա այն մասին, որ Արա Գեղեցիկ թագավորի մահից հետո նրա որդուն՝ Անուշավանին նվիրաբերեցին այդ պուրակին, անվանելով նրան «սոսանվեր»:

Ներկայումս Երևանում սոսին շատ է տարածված: Դուք այդ ծառատեսակը կարող եք տեսնել Լենինի պողոտայում, Կիրովի փողոցում և համարյա բոլոր զբոսայգիներում: Տերևները թաթաձև են, բնի վրայից կեղևը անընդհատ անջատվում, թափվում է, որի հետևանքով բունը սպիտակավուն է թվում: Ջերմասեր և խոնավասեր բույս է: Մեղրիի շրջկենտրոնում կան 350—400 տարեկան սոսու խոշոր ծառեր, որոնց բնի շրջագիծը հասնում է 7—9 մետրի: Սոսին կարող է ապրել մինչև 4000 տարի: Էգեյան ծովի Կոս կղզում աճում է սոսու 2300 տարեկան մի ծառ, որի բնի տրամագիծը անցնում է 18 մետրից, իսկ բարձրությունը՝ 50 մետրից:

## ԳՆԴԱՁԵՎ ԹԵՂԻ

Այս ծառատեսակը նույնպես շատ է տարածված Երևանում: Երիզում է Լենինի հրապարակը: Թամանյան փողոցզբոսայգին և այլն: Հին Հայաստանում ամենատարածված ծառատեսակներից է: Աչքի է ընկնում շոգադիմացկունությամբ և չորադիմացկունությամբ: Ծաղկում է վաղ գարնանը, բոլոր ծառատեսակներից շուտ: Թեղին հրաշալիորեն ներդաշնակում է հայկական ճարտարապետական ոճով կառուցված շենքերին: Երևան քաղաքի պատմության թանգարանի բակում կան գնդաձև թեղու 90—100 տարեկան խոշոր ծառեր:

Երևանի կանաչ տնկարկներում դուք հաճախ նկատած կլինեք թեղու ամբողջովին չորացած խոշոր ծառեր: Դա վատ խնամքի հետևանք չէ: Թեղին վարակվում է այսպես կոչված «հոլանդական հիվանդությամբ», և մի քանի օրվա ընթացքում հսկայական ծառը չորանում է: Նման դեպքում անհրաժեշտ է ան-



միջապես ծառը կտրել և հեռացնելով այրել, որպեսզի մյուս բույսերը ևս չվարակվեն:

## ՀԱՑԵՆԻ

Անունը պատահական է տրված, քանի որ սա խմորեղենի հացի ծառի հետ ոչ մի ընդհանուր կապ չունի: Վերջինս աճում



Հացենի

է հարավային կիսագնդի արևադարձային գոտում և տալիս է մինչև 20 կիլոգրամանոց պտուղներ, որոնք պարունակում են հատուկ ալյուր, որից կարելի է հաց թխել:

Երևանում տարածված հացենիները միայն գեղազարդիչ նշանակություն ունեն: Հացենիներ են աճում Մոսկովյան, Աբովյան փողոցներում, բոլոր կանաչ տնկարկներում: Կան տեղական և ամերիկյան հացենիներ, որոնք միմյանցից տարբերվում են տերևների ձևով, գույնով, պտուղների ձևով և բնի կառուցվածքով:

## ԱՄԵՐԻԿԱԿԱՆ ԹՂԿԻ

Երևանում ամենատարածված ծառատեսակն է: Խոշոր ծառեր կան Մարքսի փողոցում՝ «Սևան» հյուրանոցի մոտ: Բերված է Ամերիկայից: Հանդիպում է ամենուրեք: Չափազանց արագ է աճում: Հեշտությամբ կարելի է ճանաչել, քանի որ տերևները հացենու են, իսկ պտուղները՝ թղկու: Այս հանգամանքի շնորհիվ էլ սրան երբեմն անվանում են «հացենիատերև թղկի»: Չափազանց դիմացկուն և քչապահանջ ծառատեսակ է:



Ամերիկական թղկի

Աճում է Հայաստանի կլիմայական բոլոր գոտիներում: Քաղաքի պայմաններում 50—60 տարուց ավել չի ապրում:

## ՀՈՒԴԱՅԱԾԱՌ

Տարածված է Միջերկրական ծովի ավազանում: Երևանում քիչ է հանդիպում: Այս ծառատեսակը դուք կարող եք տեսնել Ղ. Ղուկասյանի անվան պուրակում՝ շրջանային այգում («Լոռի» ռեստորանի մոտ), Հրազդանի մեծ կամուրջի աջ կողմում (Հաղթության փողոցի սկզբնամասում): Բազմաբուն է, սերմերը և պտուղները հիշեցնում են լոբու պտուղներ և տերևներ: Ի տարբերություն մյուս ծառատեսակների, այս բույսի ծաղիկները առաջանում են բնի և բազմամյա ճյուղերի վրա: Այս երևույթը կոչվում է «կաուլիֆլորիա» և հատուկ է արևադարձային բույսերին, օրինակ՝ կակաոյի ծառին:



Հուդայածառ

«Հուդայի ծառ» է անվանվում, քանի որ, ըստ ավանդության, Հուդան այս ծառի ծաղկած ճյուղերից գործած պսակ է կրել: Ծաղկում է ապրիլի վերջին՝ վարդագույն, գեղեցիկ, առատ ծաղիկներով: Մեղրատու բույս է:

## ԿԱՏԱԼՊԱ

Անվանում են նաև «մակարոնի ծառ», քանի որ պտուղները երկար են և մակարոնի նման կախված են ծառից: Երևանում շատ է տարածված: Ցածրահասակ, ծուռ բնով ծառ է: Տերևները շատ խոշոր ու լայն են: Սպիտակ կամ դեղնավուն ծաղիկները հավաքված են խոշոր



Կատալպա

հուրաններում: Ծաղկում է հունիսի սկզբին:

Այս ծառատեսակը հանդիպում է Նալբանդյան փողոցի սկզբնամասում: Հայրենիքը Չինաստանն է ու Հյուսիսային Ամերիկան: Խոնավասեր և ջերմասեր բույս է:

## ՍՈՖՈՐԱ

Հանդիպում է Կ. Բանակի փողոցում: Արտաքինից նման է սպիտակ ակացիային, սակայն ծաղկում է ամռան վերջին, դեղին ծաղիկներով: Պտուղները փոքրիկ շարաններով իրար միացած



Սոֆորա

գնդիկների տեսք ունեն: Ջերմասեր է և խիստ չորադիմացկուն:

Պետք է զգույշ վարվել այս ծառատեսակի հետ, քանի որ բոլոր օրգանները թունավոր են: Երիտասարդ ճյուղերից և պտուղներից արժեքավոր դեղին ներկ են ստանում, որով Ճապոնիայում և Չինաստանում ներկում են մետաքսյա կտորները: Մեղրատու է:

## ԽԵՆՈՄԵԼԵՍ
**(Ճապոնական սերկևիլենի)**

Թուփ է: Հանդիպում է Աբովյան փողոցում, Պուշկինի այգում և Բարեկամության փողոցի նախապարտեզներում: Այս բույսը հեշտությամբ կարելի է ճանաչել վաղ գարնանը, երբ դեռևս չտերևակալած թփերը ծածկվում են կրակակարմիր, առատ ծաղիկներով: Բերված է Ճապոնիայից, սակայն մեր պայմաններին շատ լավ է հարմարվել: Պտուղները և տերևները մեծ քանակությամբ C վիտամին են պարունակում:



Խենոմելես ճապոնական

## ՖՈՐԶԻՑԻԱ

Նույնպես ծաղկում է վաղ գարնանը, բաց դեղին ծաղիկներով: Հանդիպում է Ղ. Ղուկասյանի անվան այգում, օպերայի և բալետի ակադեմիական թատրոնի շրջակայքի պուրակում և այլ տնկարկներում: Ծագում է Չինաստանից:



Ֆորզիցիա միջանկյալ

## ՀԻՄԱԼԱՅԱՆ ՄԱՅՐԻ

Փշատերև, ջերմասեր ծառատեսակ է: Երևանի կլիման բավականին դաժան է այս ծառատեսակի համար: Սրանից 13—15 տարի առաջ մեծ քանակությամբ մայրու երիտասարդ ծառեր տնկեցին Աբովյան փողոցի բաժանարար շերտում և քաղաքի այլ մասերում: 1963—64 թթ. ձմռան սառնամանիքները գրեթե լրիվ ոչնչացրին այս ծառատեսակը: Ներկայումս հին բույսերից երկուսն են մնացել. մեկը պոլիտեխնիկական ինստիտուտի մուտքի մոտ, իսկ մյուսը՝ Մ. Գորկու անվան դպրոցի մոտ: Նոր բույսեր են տնկված գիտությունների ակադեմիայի հին շենքի նախապարտեզում և Աջափնյակում, Հալաբյան փողոցի սկզբնամասում: Լավ խնամքի և մշակության դեպքում այս ծառատեսակը կզարդարի Երևանի կանաչ տնկարկները: Հայրենիքը Հիմալայան լեռներն են:



Հիմալայան մայրի

## ԱՐԾԱԹԱԳՈՒՅՆ ԵՂԵՎՆԻ

Բերված է Հյուսիսային Ամերիկայի ժայռոտ լեռներից: Երևանում քիչ է տարածված: Մի քանի խոշոր, գեղեցիկ ծառեր կան ՀԿԿ Կենտկոմի շենքի մոտ և օպերայի ու բալետի ակադեմիական թատրոնին կից պուրակում: Աչքի է ընկնում դեկորատիվ անլուգական առանձնահատկություններով: Փշատերևները արծաթավուն են, որից և ստացել է իր անվանումը: Այս տեսակը բավականին դիմացկուն է և կարելի է մշակել Հայաստանի համարյա բոլոր բնակավայրերում:



Եղևնի արծաթագույն

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանական գիտությունների թեկնածու




Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 10 հոկտեմբեր 1970 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ԲԱԳՐԱՏ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции:
Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15,*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05751: Պատվեր՝ 941: Տպաքանակ՝ 64700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 16/X 1970 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:
Գինը՝ 10 կ.

10 կ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806

# Բաժանորդագրվեցե՛ք «Պիոներ» և «Ծիծեռնակ»




ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵ՛Ր

Սկսվել է ձեր ամսագրերի՝ «Պիոների» և «Ծիծեռնակի» 1971 թվականի բաժանորդագրությունը:

1971 թվականին ձեր սիրելի ամսագրերը լույս կտեսնեն ավելի շքեղ և ավելի հարուստ բովանդակությամբ: Ամսագրերի էջերում դուք կգտնեք հետաքրքիր պատմվածքներ, ու հեքիաթներ, զրույցներ ու ակնարկներ, գունազարդ նկարներ ու գծագրեր: Դուք կկարդաք ձեր պիոներական աշխատանքներին օգնող շատ նյութեր, ինչպես նաև նյութեր գիտության, տեխնիկայի և արվեստի նորությունների մասին: Ամսագրերի էջերում տպագրված վերատպություններով դուք կհարստացնեք ձեր անձնական և դպրոցի կոլեկցիաները:

Երկու ամսագրերում էլ առատ նյութեր կտրվեն ձեր ժամանցը լավ անցկացնելու համար.

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ «ՊԻՈՆԵՐ» ԵՎ «ԾԻԾԵՌՆԱԿ» ԱՄՍԱԳՐԵՐԻՆ

Բաժանորդագրության պայմաններն են՝

| «ՊԻՈՆԵՐ» | «ԾԻԾԵՌՆԱԿ» |
|---|---|
| 3 ամիսը—30 կ. | 3 ամիսը—30 կ. |
| 6 ամիսը—60 կ. | 6 ամիսը—60 կ. |
| մեկ տարին 1 ռ. 20 կ. | մեկ տարին 1 ռ. 20 կ. |

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ